## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՊԷԼՎԻԼԻ ՌՈՍՏՈՄ ԼՍԱՐ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ, Chalet Edouardի սրահներուն մէջ, 31–33 Rne Manin, 93 Ave. Secrétan մէթրօ՝ Combat կամ Buttes Chaumont.

Կը նախագահէ՝ Վ. ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ

Կը ներկայացուի ՄԵՐ ԱՄԱԹԷՕՐՆԵՐԸ ԵՒ ՎԻՐԻ ՃԱՇԱՐԱՆԻՆ ՍՊԱՍԱՒՈՐԸ (զաւեշտ) ԵՒ ՀԱՅՐԵՆԱՍԻՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Փոքրիկն Սիրանուշ Լուսինեան կը պարէ հայկ. պարեր

Կոփամարտի մրցում Աթաեանի եւ Ֆրանսայի նախկին Շանփիոն Ժան Ֆրանսուայի միջեւ:

Ցեղի կ'ունենան երգ, նուագ եւ արտասանութիւններ

ՄՈՒՏՔ 7.50 ԵՒ 5 ՖՐԱՆՔ

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

կազմակերպուած Մարսէյլի Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ, 31 Յունուար Շաբաթ իրիկուն:

Կը ներկայացուի՝ ԽԱԻԱՐԻ ՄԷՋԷՆ

Նկատի ունենալ այս թուականը

## ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պուա Քոլոմպի մասնաճիւղին կողմէ այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ Պուա-Քոլոմպի քաղաքապետական սրահներուն մէջ, Rue des Halles.

Կը նախագահէ Պ. ԶԱՏԻԿ ԽԱՆԶԱՏԵԱՆ

Կը խօսի՝ ՏԻԿԻՆ ԷԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ

Կը ներկայացուի՝ ՍԻՐԱՅԻՆ ՈԺԻՐ (զաւեշտ)

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օրիորդներ Լ. Աղաբէկեան, Աստղիկ Առաքելեան, Պ. Պ. Վ. Քնարեան, Ս. Եփրեմեան (երգ), Օր. Մինթանճեան (դաշնակ), Օր. Ալթունեան (Փարիզի քոնսէրվաթուարէն, ջութակ), Պ. Պ. Յ. Քէօրիւճեան եւ Մ. Պոստանճեան (հայկ. պարեր), Սկաուտական խաղեր, խմբերգ, արտասանութիւն, ճաշ, եւր. պարեր, ճոխ պիւֆէ: Մուտք 10 ֆրանք

Կը մասնակցին՝ Տիկ. Ս. Նշանեան, Պ. Պ. Տ. Նշանեան, Դպէթեան եւ Սարաֆեան:

## Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Յունուար 10ին Salle d'Horticultureի մէջ, 84 rne de Grenelle Métro, Bac.

Կը նախագահէ Պ. ԱԼ. ԽԱՏԻՍԵԱՆ

Կը մասնակցին՝ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ եւ Ամերիկայի հայ ՖԱՔԻՐ ԳԱՌՆԻԿ ԹԱՐԱՆՃԵԱՆ (the Great Rajah).

Երգ, նուագ, արտասանութիւն, թատ, հայկական, կովկասեան եւ ռուսական ժողովրդական պարեր:

Ընտիր ճաշ, ճոխ եւ մատչելի պիւֆէ Մուտք 10 Ֆր.

Տոմսերը կը ծախուին «Յառաջ»ի խմբագրատունը, «Հրանտ. Սամուէլ» գրատան մէջ եւ «Ֆլորիա» ճաշարանը:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի վասպուրականի Հայր. միութեան կողմէ, այսօր ժամը 2ին Salle S. L. S. A. Սոսիէթէ Լիոնէզի սրահին մէջ,

Կը ներկայացուի՝ ՈՒՇ ԼԻՆԻ — ՆՈՒՇ ԼԻՆԻ

Նուագ՝ ղեկավարութեամբ Պ. Ա. Մելքոնեանի եւ մասնակցութեամբ դաշնակահարուհի Mlle Rodanիի: Գիներ՝ 5 եւ 4 ֆր

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Զմիւռնիոյ Նահնգ. Հայր. Միութեան կողմէ

Վաղը Կիր. ժամը 2ին, իսկ նոյն օրը ժամը 8ին պարահանդէս S. L. S. A. սրահին մէջ, ընտիր ջազ պանտ

Կը ներկայացուի՝ ՉԱՐ ՈԳԻՆ (4 արար)

Պարահանդէսին կը մասնակցին Հայկական տարազներով 20 հայ օրիորդներ որ պիտի պարեն հայկական պարեր:

Մուտք՝ 5 ֆր. պարահանդէսին այր եւ կին 3 ֆր. առանձին 2 ֆր.

## ՏՕՆԱՄԱՐ

Փարիզի Հայ Արիներուն կը յայտնենք ի գիտութիւն հայ ծնողներու թէ վաղը կէսօրէ վերջ ժամը 2.30ին La Démocratie սրահին մէջ 38. Bld. Raspail. մէթրօ՝ Sèvres Babylone. տեղի կ'ունենայ [illegible] Սրահներու մէջ կը տրուին [illegible] եւ փոքրիկ նուէրներ: Մուտքը ազատ է [illegible] 5 փրանք կը վճարուի ամէն մէկ երախայ:





## ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ

Պատմական նոր մէկ վէպը՝ (մարիամ մագթաղինացիի կեանքէն)

ՌԱՊՊԻ

Խորհրդանկարուած ՄԵԼՔՈՆ ՔԷՊԱՊՃԵԱՆԷ

Գին՝ 15 ֆր. Դիմել ճեղինակին՝ 208bis Rue Lafayette, Paris (10)

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ժողովը այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Ֆլորիա ճաշարանին մէջ: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԻԹԱԼԻԻ «Աղբիւր Սերոբ» խումբի ընկերները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին վաղը կիրակի ժամը 3ին, սովորական հաւաքատեղիին մէջ, ներկայ կ'ըլլայ կեդ. կոմիտէի ներկայացուցիչը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՊԱՆԵՕ-ՔԱՇԱՆ Արծիւ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Կիրակի առաւօտ ժամը 9.30ին ընկ. Ալթունեանի բնակարանը, 17 rue Amper, Cachan. Կը խօսի ընկ. Ռէն:

ՇԱՎԻԼԻ Արղութեան խումբի ընկերներն ու ընկերուհիները ժողովի կը հրաւիրուին այս իրիկուն ժամը 8.30ին Մօնփարնասի (Շավիլի մէջ) ծանօթ հաւաքատեղին, կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Շրջ. կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Իշխան ենթակոմիտէի բոլոր ընկերները վաղը կիրակի ժամը 2.30ին: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՍԷՆ ԼՈՒԻ (Մարսէյլ) Ակնունի ենթակոմիտէի ընտանեկան խնջոյքը Նոր տարւոյ առթիւ այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին, ծանօթ հաւաքատեղին: Բոլոր Կոմիտէներու ընկերները կրնան ներկայ ըլլալ:

## ՀԱՅ ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին, 71 Ave. Kléber. Կը խօսի՝ Ս. Վրացեան: «Խորհրդային իշխանութեան տասը տարիները»:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի տիկին Հրանուշ Բ. Շահպազ եւ պարագաները իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնները յայտնեցին Տիկ. ԱՂԱԻՆԻ ԼՈՒՍԻՆԵԱՆի մահուան առթիւ:



## ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատ. Միութեան «ԿՈՅԱՄԱՐՏ» օրացոյցը, նոր բովանդակութեամբ եւ հետաքրքրական նկարներով: Դիմել ծախողներուն, 14 Rue de la Fare, Marseille. կամ [illegible] վարչութեան:

Գին՝ 6 ֆրանք, փոստի ծախսով 6.50 ֆր.:










IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN


## ԹԷՅԱՍԵՂԱՆ

Հայ Արիներու Մարսէյլի Մասնաճիւղի տարեկան թէյասեղանը վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին Սալոն Սէն Ժաքի 4 Rue St. Jacques: Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տէր եւ Տիկին Սուրաբեան եւ Մարութեան:

Ամենէն ծանրակշիռ ըմբոստացումը ծագեցաւ «Փրոֆինթէրն» յածանաւուն վրայ, որ դեկտեմբեր 16ին, մեկներ էր Սեվաստաբոլի նաւահանգիստէն:

Եւ երբ կրկին նաւահանգիստ կը վերադառնար, կէփէուի մարդիկը ուզեցին ձերբակալել Միլիուքին անունով ենթասպայ մը, որ հակայեղափոխական զրգութիւններով կը մեղադրուէր: Ամբողջ նաւազները ընդդիմացան այս ձերբակալման:

Անթելով օգնութիւն ուզուեցաւ. շատ չանցած «Փրոֆինթէրն»ը պաշարուած էր իսկական նաւատորմով մը: Պէտք եղաւ օգնութեան կանչել թորփիլահալած մը, յածանաւ մը, երկու ընդծովեաներ եւ 9 թորփիլանաւեր, զսպելու համար ըմբոստները, որոնք յանձնուելէ առաջ կոտրտեցին յածանաւուն բոլոր մեքենաները եւ զանոնք դարձուցին անգործածելի: Յածանաւուն բոլոր նաւազներն ու սպաները այս կերպով ձերբակալուեցան ու յանձնուեցան պատերազմական ատեանին, որուն վճիռը անմիջապէս գործադրուեցաւ: 22 նաւազներ գընդակահար եղան: Իսկ միւսները դատապարտուեցան երկարատեւ բանտարկութեան:

## Ռուս-լեհական դաշինք?

ՊՈՒՔՐԷՇ, 4 յունուար.— «Լուփթա» թերթը որ առհասարակ քաղաքական ստոյգ աղբիւրներէ կը քաղէ իր լուրերը, կը յայտնէ թէ ատենէ մը ի վեր բանակցութիւններ կը կատարուին, վերանորոգելու համար լեհեւռուսական դաշնակցութիւնը: Թերթը յայտնելէ յետոյ թէ այս մասին՝ Զուիցերիոյ մէջ տեսակցութիւն մը պիտի ունենան Լեհաստանի արտաքին նախարը Զալէսքի և Ռումանիոյ վարչապետը Միրոնէսքօ, կ՚աւելցնէ.— Լեհեւռուսէն դաշինքը կը վերջանայ փետրուարին: Վերանորոգման բանակցութեանց ընթացքին, նոր խրողութիւն մը երեւան եկած է: Խորհրդ. կառավարութիւնը առաջարկած է Լեհաստանի, փոխադարձ չէզոքութեան դաշինք մը կնքել Լեհաստանի եւ Խորհրդ. Միութեան միջեւ, ճշդելով մանաւանդ որ երկու կողմերէն ո՛չ մէկը պիտի մասնակցի այն դաշնակցութեանց որոնք ուղղուած են իրենցմէ մէկուն դէմ:»

Լեհական կառավարութիւնը պատրաստակամութիւն յայտնած է այդ մասին բանակցութեան մտնելու, պայմանաւ որ այդ փոխադարձ չէզոքութեան դաշինքը ընդարձակէ իր սահմանները եւ իր մէջ առնէ Մոսկուայի մէջ՝ Լիտվինովի կնքած համաձայնագրին բոլոր ստորագրող կողմերը:

Թերթը կը կարծէ թէ լեհեւռուսական դաշնագիրը կարելի պիտի ըլլայ վերանորոգել փետրուարէն առաջ, այսինքն լեհեւռուս հաւանական բանակցութիւնները տակաւին չսկսած:










**Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ**

Յունուար 10ին Salle d'Horticultureի մէջ, 84 rne de Grenelle Métro, Bac.

Կը նախագահէ Պ. Ալ. ԽԱՏԻՍԵԱՆ

Կը մասնակցին՝ Պ. Ա. ՇԱՀԽԱԹՈՒՆԻ եւ Ամերիկայի հայ ՖԱՔԻՐ ԳԱՌՆԻԿ ԹԱՔԱՆՃԵԱՆ (the Great Rajah).

Երգ, նուագ, արտասանութիւն, թատ, հայկական, կովկասեան եւ ռուսական ժողովրդական պարեր:

Ընտիր ճաշ, ճոխ եւ մատչելի պիւֆէ — Մուտք 10 ֆր.



## Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ժողովը այսօր երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Ֆլորիա ճաշարանին մէջ. ներկայ կ՚ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

**ԳԱՐԱԱՌ**

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դաշնակցութեան Գրադարանին մէջ:

Այրի Տիկին Ռ. Որբերեան, Պ. Ա. Որբերեան, Օրիորդներ Արուսեակ և Մարիամ Որբերեան, Տէր եւ Տիկ. Օ. Որբերեան եւ զաւակները (Նիւ Եորք), եւ Տէտէեան եւ Սպարթալի ընտանիքները խորին կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր, հօրեղբօր

**ՌՈՒԲԷՆ ՈՐԲԵՐԵԱՆի**

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ 56 տարեկան հասակին:

Յուղարկաւորութիւնը տեղի կ՚ունենայ վաղը Չորեքշաբթի առաւօտ ժամը 11.30ին Փարիզի հայոց եկեղեցւոյն մէջ, ուսկից հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Saint Ouen (Parislen)ի գերեզմանատունը:

**ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ**

Բժիշկ Գէորգեան եւ իր կինը Արփենիկ Գէորգեան (ծնեալ Արղութեան) իրենց շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իշխանուհի ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆի մահուան առթիւ:

**ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ**

Զարացեան ընտանիքը իր շնորհակալութիւնը կը յայտնեն Կրընոպլի, Բրուա Րուժի, Լանսէի, Պրինեոյի հայրենակիցներուն որոնք անձամբ կամ նամակով ցաւակցութիւն յայտնեցին տիկին ՄԱՐԻԱՄ ԶԱՐԱՑԵԱՆի մահուան առթիւ:

Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Դեկտ. 3ին:

Ա. Ե. Հ. Կ. Խ.ի Մանուկներու Պաշտպանութեան փարիզի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Իշխանուհի ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ գումարները, Հ. Յ. Դ. Բիւրօ 300 ֆրանք, Աղդութեան խումբ 100, փարիզի կոմիտէ 50 ֆրանք:

ՓԱՐԻԶԻ Աղքատախնամ ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացած է, փոխան ծաղկեպսակի, Տիկին Է. ՀԱՃԵԱՆի մահուան առթիւ հետեւեալ գումարները. Յ. Բուլճեան 200, Վ. Բուլճեան 200, Գ. Աղաթօն 200, Վ. Էսմէրեան 200:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուին Գոնիայի որբանոցէն, Կարապետ Կիրմիրլեան, Օննիկ Փիլիկեան, Ստեփան Ղուկասեան, Արփիար Թաքարեան, Յարութիւն Մաղաքեան եւ Յովհաննէս Պապոեան որոնք 1928ին Թորինոյէն (Իտալիա) մեկնած են Ֆրանսա աշխատելու համար: Կը կարծուի թէ Մարսիլիա կամ Լիոն կը գտնուին: Իմացնել իրենց որբ ընկերոջ Հայկ Սուքիասեանի, Via Cadurso Villaggio Armeno Bari (Italie).

**ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ**

Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատ. Միութեան «ԳՈՅԱՄԱՐՏ» օրացոյցը, ճոխ բովանդակութեամբ եւ հերոսներու նկարներով: Դիմել Ճարալեանի, 14 Rue de la Fare, Marseille. կամ Յառաջի վարչութեան:

Գին՝ 6 ֆրանք, փոստի ծախքով 6.50 Ֆր.:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

**ՍՏԱՑԱՆՔ**

Վիլժուիֆ, Տիկ. Բ — 100:
Իսի-լէ-Մուլինօ, Ս. Պ.— 43:
Բրէմլին, Թ. Կ.— 100:
Սէն Շամոն, Գործ.— 205:
Ֆոնթէն, Կ. Փ.— 155:
Մարսէյլ, Վառ.— 140
Մարսէյլ, Գ. Կ.— 35:
Լիվրի-Կարկան, Ալթ.— 35:
Վէրիւ սիւր Պուրպըր, Ա. Գ.—35:
Փարիզ, Ն. Ղ.— 35:
Անոնվիլ, Բաշ.— 35:
Փոն տը Քլէքս. Գ. Տ. Ղ.— 140:
Ժուանվիլ, Ն. Ն.— 70:
Պանեէօ. Օր. Թ.— 70:
Սէն Մօրիս, Պ. Տ.— 110:
Նիս, Ա. Ս.— 70:
Մարսէյլ, Խ. Ն.— 70:
Կարտան, Ս. Թ.— 140:















IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN

ցիչներուն.— Յունաստան չի կրնար դաշինքներու վերաքննութեան որ եւ է մտադրութիւն սնուցանել։ Ան արդէն շատ վնասուեցաւ այդ տեսակէտէն, երբ Սեվրի դաշնագիրը տեղի տուաւ Լօզանի դաշնագրին։ Միւս կողմէ, Յունաստան՝ այնքան փոքր երկիր մըն է, որ չի կրնար վերաքննական շարժման մը գլուխը կանգնիլ։ Ան կատարելապէս կը գիտակցի թէ նման շարժում մը կրնայ Եւրոպան նետել նոր արկածախնդրութեանց մէջ։

«Յունաստան կը փափաքի միայն բարեկամական խաղաղութեան վիճակ մը տեսնել բոլոր դրացի երկիրներուն մէջ։ Յունաստան չէզոքութիւնը լքեց՝ լրացնելու համար իր ազգային միութիւնը։ Այս միութիւնը ներկայիս իրականացած ըլլալով, որեւէ մտահոգութիւն և փափաք չունի եթէ ոչ չէզոքութեան պահպանումը։ Նոյնիսկ եթէ ուրիշ պետութեանց միջեւ պատերազմ ծագի, Յունաստան չէզոք պիտի մնայ»։

## Բոլշեւիկեան ելմտացոյցը

Հնգամեայ ծրագրի երրորդ շրջանին համար, խորհրդային ելմտական յանձնախումբին պատրաստած ելմտացոյցը զարմանքի մատնած է Մոսկուան։

Երրորդ տարուան պիւտճէ նշանակուած է 31 միլիառ 800 միլիոն ոսկի րուբլի, ինչ որ նախորդ շրջանի ելմտացոյցին վրայ հարիւրին 36 յաւելում մը կը նշանակէ։

Ելմտական յանձնախումբը կը կարծէ որ այս յաւելումը պիտի արդարանայ 11 միլիառ րուբլիի յաւելուածական հասոյթով մը։

Նոր ելմտացոյցին ծախքերու բաժինը չափազանց անկատար է։ Անոր մէջ որեւէ յատկացում չէ նշանակուած բանակին, նաւատորմին եւ արտաքին գործավարութեան։

Իսկ այս տարի, 12 միլիառ րուբլիի գումար մը պիտի յատկացուի ազգ. տնտեսութեան։

## Կորնթոսի վիճակը

Վերջին լուրերու համաձայն, երկրաշարժը քանդած կամ անբնակելի դարձուցած է 100ի չափ շէնքեր Կորնթոսի շրջանի գիւղերուն մէջ։ Մարդկային կորուստները թեթեւ են։ Ծեր կին մը սպաննուած եւ երեք ուրիշ կիներ վիրաւորուած են։ Երեք նախարարներ գացած են աղէտին վայրը, վարելու համար օգնութեան գործը։

Զինուորական վրաններ տրամադրուեցան այն ընտանիքներուն, որոնց բնակարանները քանդուած են։

## Իրաքի խարիւղին շուրջ

«Տէյլի Հէրըլտ» կը հաղորդէ թէ հոգատարութեանց յանձնախումբին տեղեկագիրը որ այս ամսու պիտի ենթարկուի Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդին, կը բողոքէ Իրաքի քարիւղի շահագործումը մենաշնորհի վերածելու ամէն ձեռնարկի դէմ եւ կը յայտնէ թէ այդ շրջանի քարիւղին մենաշնորհի տէրերը պէտք է որ պարտաւոր նկատուին ապահովելու Իրաքի քարիւղի ճարտարարուեստին կատարեալ զարգացումը։

Տեղեկագիրը տեղեկութիւններ կը պահանջէ պատճառներուն մասին, որոնց հետեւանքով ուշացաւ քարիւղային խաւերու շահագործումը եւ յոյս կը յայտնէ թէ հոգատար պետութիւնը պիտի հսկէ որ Իրաքի կառավարութիւնը երկրին շահերուն համապատասխան ուղղութիւն մը բռնէ։

### ԹՐՈՑՔԻ ՆՈՐՎԵԿԻՈՅ ՄԷՋ

Նորվեկիոյ ուսանողական Միութիւնը խնդրեց կառավարութենէն որ թոյլ տայ Թրոցքիի քանի մը օր բնակելու Նորվեկիա դէպի յունուարի վերջերը, մէկ քանի դասախօսութիւններ տալու համար։ Ուսանողական Միութիւնը կ'երաշխաւորէ որ Թրոցքի պիտի զգուշանայ քրքրելէ Նորվեկիոյ ներքին քաղաքական հարցերը։

Իշխանութիւնները քննելու վրայ են խնդիրը։



## Հ. Յ. Դ.

ԱՌՆՈՒՎԻԼ-ԼԸ-ԿՈՆԷՍԻ Ռազմիկ խումբի անդամական ժողովը վաղը Եշ. իրիկուն, ընկեր Յակոբ Խաչատուրեանի բնակարանը։ Ներկայանալ անդամատետրով։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դաշնակցութեան Գրադարանին մէջ։

ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը վաղը Եշ. իրիկուն ժամը 8ին 11Րիւ Տինուար սրճարանին մէջ։ Կարեւոր օրակարգ։

Ծանօթ.— Հ. Յ. Դ. Լիոնի ժողովուրդային Գրադարանը տեղափոխուած է 11 rue Dunoir, Lyon, Rhône.

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑՈՒԱԾ

Պրայիլա, Հ. Մ.— 100։
Վրնձու, Յ. Պ.— 100։
Մարսէյլ, Ժամ.— 53։
Էքս ան Փրովանս, Զատ.— 70։
Սէն Թ'Օպան, Յ. Զ.— 140։
Պոլէն, Զիմ.— 105։
Երուսաղէմ, Գ. Ք.—1 ոսկի։
Թրիէսթէ, Վ. Յ.— 250։
Մարսէյլ, Ա. Ա.— 140։
Սէն Թրոփէզ, Զօր.— 35։
Վիրոֆլէյ, Տիկ. Զօզ.— 35։
Նանթէր, Մ. Թ.— 100։
Մարսէյլ, Գործ.— 1055։
Բան, Կարս.— 60։
Փլանկէթ, Տիւլ.— 37։
Լա Պօքա, Բան.— 35
Վարշաւիա, Ա. Ա.— 50
Փիւմէ սիւր Արժան, Կ. Մ.— 40։
Փոն Սէն Թ'էսփրի, Ն. Մ.— 152։
Տուրացցօ, Պօտ. և Պոլ.— 300։
Աղեքսանդրիա, Մ. Խ.—2 անգլ.։
Վիրիէօ սիւր Պուրպրր. Կ. Մ.—50։
Պարի, Թ. Փ.— 50 լիր.։
Լիոն, Թ. Ա.— 35։
Մարսէյլ, Մ. Յ.— 35։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN


## Ս. Փ. ԱԶԳ. ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՏԱՐԵՑՈՅՑԸ

ճոխ եւ ճ'ոտաքրքիր բովանդակութեամբ ունի տնտեսական, վիճակագրական, պատմական, ազգային, բանասիրական, գրական, գեղարուեստական եւ գիտական բաժիններ։ Մասնակցած են 60 գրիչներ։ Բազմաթիւ գեղարուեստական նկարներ։ 10 հատ գունատիպ պատկերներ փայլուն թուղթի վրայ։ 480 էջ, գին 200 դուրուշ. արտասահման 50 ֆրանք։ Դիմել՝ Հայոց եկեղեցին կամ Կարիիր Խաչին, 15 Rue Jean Goujon, Paris (8).

## ԱԶԴ

Ի գիտութիւն Փարիզի եւ արուարձաններու հայութեան կը հաղորդուի թէ. Փարիզի եկեղեցւոյ ընդհ. քարտուղար Պ. Գ. Բարունակեանի յանձնուած «Որբերու կիրակի»ի 14 թիւ տետրակը կորսուած է։

Ներկայիս կը յայտարարենք թէ ոչ ոք. բացի Պ. Գ. Բարունակեանէ արտօնուած է վերոյիշեալ 14 թիւ տետրակով հանգանակութիւն կատարելու։

Հ. Բ. Հ. Միութեան
Փարիզի մասնաժողով

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուին Գոնիայի որբանոցէն, Կարապետ Կիրմիրլեան, Օննիկ Փիլիկեան, Ստեփան Ղուկասեան, Արփիար Թաքարեան, Յարութիւն Մաղաքեան եւ Յովհաննէս Պապոեան որոնք 1928ին Թորինոյէն (Իտալիա) մեկնած են Ֆրանսա աշխատելու համար։ Կը կարծուի թէ Մարսիլիա կամ Լիոն կը գտնուին Իմացնել իրենց որբ ընկերոջ Հայկ Սուքիասեանի, Via Cadurso Villaggio Armeno Bari (Italie).

— Կը փնտռուին Գէորգ Ղազարեանի կինը այրի Թագուհի Ղազարեան եւ զաւակները Սարգիս, Յակոբ եւ Գրիգոր։ Վեց ամիս առաջ նամակ առնուած է իրենցմէ Պէյրութէն։ Իմացնել իրենց հօրաքրոջ աղջկան Եղիսաբէթ Գասպարեանի (ծնեալ Պօտիկեան) 12 Passage de l'Union, Asnières, Seine. France.

— Կը փնտռուի Պրուսայի Պէյնի գիւղէն Յակոբ Նեմսէեան, հօր անունը՝ Բենիամին, մօր անունը՝ Հայկանուշ։ Տարագրութեան միջոցին 9 տարեկան հասակին մնացած է Զաքարիայի շրջանները։ Իմացնելիր մօրեղբօր Յարութիւն Կիւլտէրեանի, 25 ter rue de Lyon, Alfortville, Seine, France. Լուր տուողին 500 Փր. նուէր։

ըսց Քարաչիի Հնդիկ ազգ. խորհուրդի պաշտօնատեղիին եւ կանտիական բազմաթիւ պետերու բնակարաններուն մէջ:

Ոստիկանները գրաւեցին շատ մը վաւերաթուղթեր եւ բռնի ուժով դուրս վտարեցին կամաւորներ, որոնցմէ շատերը կիներ որոնք չէին ուզեր հեռանալ Հնդիկ ազգ. խորհուրդի կեդրոնատեղիէն:

Կէսօրէ վերջ մահմետական ամբոխ մը, չորս ժամ անընդհատ քարկոծեց դպրոց մը, փշրելով ապակիներ եւ վիրաւորելով աշակերտներ: Ամբոխին գրգռութեան պատճառն այն է որ Լոնտոնի մէջ մեռած մահմետական պետ Մէհմէտ Ալիի մահուան առթիւ, դպրոցը չէր փակուած:

## Համաժողովական խորհրդաժողովը

Լոնտոնի համաժողովական խորհրդաժողովին վերջին նիստի թուական նշանակուած է յունուար 26: Անգլ. կառավարութիւնը առենը եկած կը նկատէ Հնդիկ պատգամաւորներուն յայտնելու Հնդկաստանի տրուելիք ազատութիւնները, որոնց կրնայ հաւանիլ: Անգլիոյ վարչապետը նախ քան, իր յայտարարութիւններն այդ առթիւ, կարծիքը պիտի շօշափէ նաեւ պահպանողական եւ ազատական կուսակցութեանց:

Հնդկաստանի նախկին փոխարքան Լորտ Ռիտինկ, Հնդկաստանի դաշնակցային սահմանադրութիւնը մշակող յանձնախումբին առջեւ պարզեց իր կուսակցութեան (Ազատական) տեսակէտը: Ազատականները տրամադիր են Հնդկաստանը օժտուած տեսնելու ինքնավար վարչաձեւով մը, բայց կը պահանջեն երաշխիքներ՝ որոնք չափազանց կը սահմանափակեն տրուած ազատութիւնները:

Հնդկաստանը տակաւին հասունցած չի նկատուիր՝ կարենալ օժտուելու համար Տոմինիոններու անկախութեամբ: Ազգային պաշտպանութիւնն ու արտաքին յարաբերութիւնները պէտք է որ վերապահուած մնան մասնաւոր նախարարներու, որոնք պատասխանատու պիտի ըլլան ոչ թէ Հնդիկ խորհրդարանին, այլ Հնդկաստանի փոխարքային եւ անոր միջոցով անգլիական խորհրդարանին:

Գալով պահպանողականներուն, անոնք սկզբունքով դէմ են դաշնակցային գաղափարին, բայց չեն կարծեր որ ինքնավար կեդրոնական վարչութիւն մը, ներկայիս, կարենայ Հնդկաստանի մէջ գործել գոհացուցիչ կերպով: Իշխանութիւնը պէտք է բաժնուած ըլլայ հնդիկ օրէնսդրական խորհուրդին եւ փոխարքային միջեւ, որ կը մնայ կառավարութեան իսկական պետը, բացարձակ վեթոյի իրաւունքով:

---
















## Հ. Յ. Դ.

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 131 Fbg. du Temple. Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է, ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը:

ԱՌՆՈՒՎԻԼ-ԼԷ-ԿՈՆԷՍԻ Ռազմիկ խումբի անդամական ժողովը այսօր Եշ. իրիկուն, ընկեր Յակոբ Խաչատուրեանի բնակարանը: Ներկայանալ անդամատետրով:

ԻԹԱԼԻԻ Աղբիւր Սերոբ խումբին ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Մուրատ խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին 5 Rue du Capitaine Ferber. ընկ. Լեւոն Ղուկասեանի բնակարանը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՋԱՒԱՐԵԱՆ կոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ Վռամեան, Մուրատ եւ Արգութեան խումբերու բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին, 186 Ave. du Verdun, Իսի լէ Մուլինօ:

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը այսօր Եշ. իրիկուն ժամը 8ին 11 Րիւ Տիւնուար սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

Ծանօթ.— Հ. Յ. Դ. Լիոնի ժողովուրդային Գրադարանը տեղափոխուած է 11 rue Dunoir, Lyon, Rhône.

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԹԷՅԱՍԵՂԱՆ.— Այս կիրակի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ, թէյասեղան մը Զ. Ե. Ո. Միութեան փարիզի մասնաճիւղին դասախօսութիւններուն վերսկսման առթիւ: Մէկ ժամ սինէմա (Փրէնսէս Մաշա) եւ զանազան զուարճութիւններ, կը հրաւիրուին անդամները ու համակիրները:

ՇԱՊԻՆ Գարահիսարի եւ շրջանի բոլոր հայրենակիցները ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրուին այս կիրակի ժամը 2.30ին 40 Rue de Bellevilleի սրահը: Օրակարգ՝ նոր վարչութեան ընտրութիւն եւ կարեւոր խնդիրներ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուին Գանիայի որբանոցէն, Կարապետ Կիրմիրլեան, Օննիկ Փիլիկեան, Ստեփան Ղուկասեան, Արփիար Թաքարեան, Յարութիւն Մաղաքեան եւ Յովհաննէս Պապոեան որոնք 1928ին Թարինոյէն (Իտալիա) մեկնած են Ֆրանսա աշխատելու համար: Կը կարծուի թէ Մարսիլիա կամ Լիոն կը գտնուին: Իմացնել իրենց որբ ընկերոջ Հայկ Սուքիասեանի, Via Cadurso Villaggio Armeno Bari (Italie).

— Կը փնտռուին Գէորգ Ղազարեանի կինը այրի Թագուհի Ղազարեան եւ զաւակները Սարգիս, Յակոբ եւ Գրիգոր: Վեց ամիս առաջ նամակ առնուած է իրենցմէ Պէյրութէն: Իմացնել իրենց հօրաքրոջ աղջկան Եղիսաբէթ Գասապեանի (ծնեալ Պոտիկեան) 12 Passage de l'Union, Asnières, Seine. France.

— Կը փնտռուի Պրուսայի Պէյնի գիւղէն Յակոբ Նեմսէեան, հօր անուն՝ Բենիամին, մօր անուն՝ Հայկանուշ: Տարագրութեան միջոցին 9 տարեկան հասակին մնացած է Զաքարիայի շրջանները: Իմացնել իր մօրեղբօր Յարութիւն Կիւլտէրեանի, 25 ter rue de Lyon, Alfortville, Seine, France. Լուր տուողին 500 ֆր. նուէր:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Պուտափէշթ, Թիր.— 100,
Մարսէյլ, Գործ.— 969,
Փիէրֆէօ, Յ. Վ.— 35,
Բրիւսս, Գ. Խ.— 37,
Անվէրս, Տ. Ս.— 82,
Տէօին, Գործ.— 400,
Բիշնէֆ, Շ. Հ.— 100,
Լիոն, Ն. Զ.— 200,
Լիոն, Յ. Տ. Մ.— 140:
Պերլին, Տիկին Մ.— 100,
Սապ-էլ-Ռատ, Ղ. Խ.— 35,
Ռուսէ Վասէ, Յ. Պ.— 35:
Քանտիա, Ս. Մ.— 200,
Փարիզ, Տ. Բ.— 40,
Թարար, Գ. Մ.— 70,
Սէն Ժընէվիէվ Իշխ. Ա.— 70,
Բլամոն, Ժ. Ա.— 35,
Պերլին, Տօքթ. Բ.— 200,
Հալէպ, Գործ.— 200,
Կալայ, Ա. Մ.— 1225,
Մարսէյլ, Ի. Թ.— 35,
Լէ Մէ, Ճ. եւ Բ.— 150,






IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN





















ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱ[Ւ]

Մարսէյլի Հ. Յ. [illegible] Միութեան «ԳՈՅԱՄԱ[Ր]» [illegible] ցոյցը, ճոխ բովանդակ[illegible] եւ հերոսներու նկարներ[illegible] մել Ծարալեանի, 14 R[illegible] Fare, Marseille. կամ [illegible] վարչութեան:

Գին՝ 6 ֆրանք, փոս[illegible] [illegible]

## Հնդկաստանի ազատագրումը

Կը յուսացուի որ Լոնտոնի համահնդկական խորհրդաժողովը պիտի կրնայ լիակատար նիստ գումարել այս ուրբաթ օր եւ յառաջիկայ երկուշաբթի օր, վերջին նիստ մը եւս ունենալ եւ յետոյ ցրուել: Դեռ յայտնի չէ թէ ո՞ր նիստին՝ Անգլիոյ վարչապետը պիտի յայտնէ կառավարութեան տեսակէտը հնդկական խնդրին մասին, սակայն դաշնակցային կազմակերպման յանձնախումբին նախագահ լորտը արդէն իր տեղեկագրով հետեւիլ կարեւոր կէտերը կը թելադրէ.— Վերապահելով պաշտպանութեան, արտաքին յարաբերութիւններու եւ եկեւմուտքի վերաբերեալ կարգ մը իրաւասութիւնները, կարելի է հետեւիլ այն եղանակին որ նախապէս կիրարկուած է հանդէպ Տոմինիոններու եւ Հնդիկներուն վստահիլ հնդիկ դաշնակցային կառավարութեան մը պատասխանատուութիւնը: Գործադիր իշխանութիւնը եւ վեհապետական իրաւունքները կը մնան Անգլիոյ թագաւորին կամ անոր ուղղակի ներկայացուցիչին, այսինքն Հնդկաստանի ընդհ. կառավարիչին: Այս վերջինն է որ կը նշանակէ նախարարները:

Այսքան ներկային համար: Իսկ փոխանցման շրջանին համար, տեղեկագիրը կը յանձնարարէ.— Հարց չի կրնար ըլլալ մէկ անգամէն Հնդկաստանի տալու համար այն իրաւասութիւններն ու պատասխանատուութիւնը որոնք ցարդ կը պատկանէին անգլիական խորհրդարանին: Փոխանցման շրջանին, ընդհ. կառավարիչն է միայն՝ որ կը վարէ արտաքին յարաբերութիւնները, ինչպէս նաեւ հնդիկ պետութեանց հետ յարաբերութիւնները եւ պաշտպանութեան գործը: Ան կրնայ նախագահել նախարարաց խորհուրդին, վարչական եւ ելմտական խնդիրներու մէջ, ան կախում չպիտի ունենայ օրէնսդիր խորհուրդներէն եւ պիտի կրնայ ինքնագլուխ ուզած միջոցներուն դիմել կարգի եւ օրէնքի պահպանման համար: Միջազգային շուկաներուն մէջ, Հնդկաստանի վարկը պահպանելու համար, ընդհ. կառավարիչը պիտի կրնայ միջամտել ելմտական եւ ելեւմտացուցային խնդիրներու: Այս նկատումով ալ տեղեկագիրը կ'առաջարկէ հիմնել պահեստի դրամատուն մը, որ զբաղի դրամի եւ դրամափոխութեան հարցերով: Գալով օրէնսդրութեան, տեղեկագիրը կը նախատեսէ Ծերակոյտ մը 100 կամ 150 անդամներով եւ Խորհրդարան մը:

Անգլիական Հնդկաստանը ներկայացնող ծերակուտականները պիտի ընտրուին նահանգային ժողովներու կողմէ: Ծերակոյտը չի կրնար լուծուիլ, սակայն պիտի կրնայ փոխուիլ մաս առ մաս, վերընտրութիւններով:

Խորհրդարանը պիտի բաղկանայ 250 անդամներէ: Պիտի ընտրուի հինգ տարուան համար եւ այս շրջանին լրացումէն առաջ, ընդհ. կառավարիչը պիտի կրնայ զայն լուծել:

## Մեծ խռովութիւններ Հնդկաստանի մէջ

Մեծ խռովութիւններ ծագեցան Պոմպէյի, Փունահի եւ Քարաչիի մէջ: Պատճառն է Փունահի բանտին մէջ, չորս անձերու դէմ տրուած մահուան վճռին գործադրումը: Ասոնք մասնակցած էին, անցեալ ամառ, Շոլափուրի մէջ մեծ խռովութեանց ընթացքին, երկու ոստիկաններու սպանութեան:

Մահապատժի գործադրութեան լուրը մեծ յուզում առաջ բերաւ նահանգներուն մէջ, մասնաւոր սաստկութեամբ, վերոյիշեալ երեք քաղաքներուն մէջ:

Պոմպէյի մէջ, ամբոխը քարկոծեց հանրակառքերն ու խափանեց երթեւեկը, եւ յարձակեցաւ ոստիկաններուն ու ոստիկանապետին վրայ: Ոստիկաններն ստիպուեցան քանիցս յարձակումներ գործել, ցրուելու համար ցուցարարները, վիրաւորելով 150 հոգի:

Փունահի մէջ, հսկայ ամբոխ մը քալեց բանտին վրայ, ուր գործադրուեր էր մահապատիժը, բայց հանդիպեցաւ ոստիկանական ուժեղ խումբերու ընդդիմութեան:

Քարաչիի մէջ, բախումներ տեղի ունեցան ոստիկաններուն եւ հազարաւոր ցուցարարներու միջեւ, որոնց խառնուած էին բազմաթիւ կիներ: 200ի մօտ ցուցարարներ վիրաւորուեցան:

Ուրիշ քաղաքներու մէջ եւս, նման դէպքեր պատահեցան:

## Պատասխան մը Փուանքարէի

«Տէյլի Մէյլ» կը գրէ թէ խորհրդային իշխանութիւնները որոշած են շինել պատերազմական ռմբաձիգ 12 մեծ օդանաւեր: Ասոնցմէ մէկը պիտի կոչուի «Մեր պատասխանը Փուանքարէի»:

Ասկից զատ, մտադրութիւն կայ նաեւ կազմելու ռեկաւոր օդանաւերու զօրեղ տորմիղ մը: Մասնագէտներուն հրաւէր ուղղուած է յատակագծեր պատրաստել ու ներկայացնել փութով:



## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



ՕՐ. ՄԱՌԻ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ
ԵՒ
ԼԵՒՈՆ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ
Նշանուած
Փարիզ 4 Յունուար 1931

## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ կայծակ խումբի ժողովը վաղը Դշ. իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանին մէջ:

ԼԻՈՆԻ Պատ. Միութեան վիճաբանական ժողովը այս Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Նիւթ՝ Հայաստանի անկախութեան գաղափարը եւ նոր սերունդը: Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան դասախօսական ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիալի մէջ: Կը խօսի՝ Պ. Բանօ, «Սուրմալուի եւ Կարսի կռիւներու մասին»: Մէկ ժամ սինէմա:

ԼԻՈՆԻ Զ. Ե. Ո. Միութեան վարչութիւնը ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին, 181 Cours Lafayette, Café de la Gareի ներքնասրահին մէջ: Օրակարգ:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Վիէն, Մ. Մ.— 35:
Միլան, Ս. Ս.— 255:
Շալէթ, Խ. Ս.— 150:
Լը Ման, Տ. Զ.— 140:
Վիէն, Յ. Զ.— 35:
Մեց, Ս. Պ.— 70:
Ռէթէլ. Սար.— 175:
Լիոն, Գ. Գ.— 35,
Տիկուան, Ս. Ա.— 20:
Նիս, Պ. Պ.— 50:
Լը Ռէնսի, Ա. Ն.— 140:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տիկին Կիւլիւզար Հօրթիկեան կը փնտռէ իր քեռին Մարաշցի Արթին Մազըեան որ 1923ին Հալէպի մէջ կաշեգործութեամբ կը զբաղէր եւ կը բնակէր Պապըլվարայ: Իմացնել Guluzar Hortikianի, 40 Doches Lyonnais, Fontaines sur Saône, (Rhône), France.

Կը խնդրուի Սուրիահայ թերթերէն արտատպել:

— Կը փնտռեմ անհրաժեշտ աղջիկը Քըրշէհիրցի Հարիկնազ Թաթարեան, հօր անուն՝ Պչաքճի Գէորգ: 1922ին 9 տարեկան հասակին Ռըլիֆի միջոցաւ Գուրու Չէշմէի (Պոլիս) որբանոցէն փոխադրուած է Յունաստան: Այս թուականէն ի վեր լուր չկայ իր մասին: Իմացնել Արշամ Տէր Սարգիսեանի, 13 Rue Parpety, La Ciotat, (B. du Rhône), France.

— Սեփաստացի Նշան Գարակէօզեան կը փնտռէ իր մօրեղբայրը եւ երկու զաւակները որոնք 1912ին մեկնած են Ամերիկա: Իմացնել՝ M. karagheuzianի 25 Rue Felix-Faure, Sevran, (S. et O.) France: Կը խնդրուի ամերիկահայ թերթերէն արտատպել:

— Կը փնտռուի Տրապիզոնցի Մատի Ուզուրեան, հօր անուն՝ Մկրտիչ, մօր անուն՝ Թագուհի: 1928ին կը բնակէր Avignon (Ֆրանսա): Իմացնել իր եղբօր Հանրի Ուզուրեանի, Collège Arménien S. Moorat, 26 Rue Troyon, Sèvres (S. et O.)



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Ռուսիոյ թունաւոր կազի գործարանները

ԼՈՆՏՈՆ, 14 յունուար.— Ռիկայէն կը հաղորդեն թէ Մինիխի մէջ պատրաստուած մեծ քանակութեամբ ամոնեաք հասած է Ռիկա, Ռուսիա ղրկուելու համար:

Թունաւոր կազի արտադրութեան յատուկ մեծ գործարան մը պիտի կառուցուի մօտերս, գերման ճարտարագէտներու եւ արհեստագէտներու հսկողութեան տակ: Անոնք արդէն Մոսկուա հասած են: Գործարանին վայրը գաղտնի կը պահուի:

## Պաղեստինի Արաբները կը պահանջեն

Պաղեստինի արաբական գործադիր կոմիտէն Լոնտոն եւ Ժընեւ ղրկուելու համար, Պաղեստինի անգլիական Մարզպանին յանձնեց Պաղեստինեան հարցին մասին՝ անգլիական Սպիտակ Գրքին իր պատասխանը:

Նամակով մը, արաբական Գործադիր կոմիտէին Նախագահը հետեւեալ կերպով կ'ամփոփէ Արաբներու պահանջները.

1.— Ջնջում Պալֆուրի յայտարարութեան եւ վերացում հոգատարութեան որովհետեւ յայտարարութիւնը հակառակ է հոգատարութեան, պայմանագրութեան 22րդ յօդուածով՝ Արաբներուն տրուած խոստումներուն. իսկ հոգատարութիւնը հակառակ է Արաբներու ազգային եւ բնական իրաւունքներուն:

2.— Պաղեստինի մէջ հաստատել կառավարութիւն մը, որ պատասխանատու ըլլայ ընտրովի խորհրդարանի մը:

3.— Արգիլել հրէական ամէն նոր ներգաղթ եւ Արաբներէ զատ ուրիշ որեւէ հողատէրերու հողային փոխանցումներու յատուկ կանոնագրութիւն մը հաստատել: Նախապէս իրենց հողերէն իրաւազրկուած Արաբները պէտք է ուրիշ հողեր ստանան:

Արաբական կոմիտէին Նախագահը իր Նամակին մէջ կը շեշտէ նաեւ թէ Թրքական կառավարութեան օրով, Պաղեստինի Արաբները լայն չափով կառավարական ինքնավարութիւն կը վայելէին, թէ Թուրքերուն հետ հաւասարապէս ստանձներ էին վարչական բոլոր պատասխանատուութիւնները եւ թէ Թաղապետական եւ վարչական ընդհանուր խորհուրդներ ունէին:

## Սպանիոյ խռովութիւնները

Նախորդ օր Մատրիտի մէջ զրոյց շրջեցաւ թէ կառավարութիւնը կը մտածէ կրկին վերահաստատել մենատիրական վարչաձեւ մը նման փրիմօ տէ Րիվերայի վարչաձեւին, վերջ տալու համար յեղափոխական խմորումներուն:

Ազնուական դասակարգէն բազմաթիւ անձեր, այս նպատակով աջակցութիւնը խնդրած են զօրավարի մը, որ ձեռնարկը դէմ նկատելով զին. կարգապահութեան՝ մերժած է:

Այս զրոյցները կը հաստատուին լաւատեղեակ թերթի մը մէկ գրութեամբ: Թերթը կը գրէ, թէ յեղափոխական խռովութեան զրոյցները դէմ բնական հակազդումով մը. ոմանք կը հաւատան թէ մօտ ատենէն մենատիրական վարչաձեւ մը պիտի հաստատուի: Ըստ այդ թերթին, կառավարութիւնը ուրիշ հոգեր ունի. միապետականներէն պէտք եղած աջակցութիւնը չի գտներ պահպանելու համար ներկայ վարչաձեւը:

## Քրուփի ընդհ. տնօրէնը Էնկիւրիի մէջ

Գերման ծսկայ գործարանին՝ Քրուփի ընդհ. տնօրէն վանտէրթման Պոլսէն Էնկիւրի գնաց: Վանտէրթման վեց օր պիտի մնայ Էնկիւրի եւ յետոյ Պոլիս պիտի գայ:

Մեծ կարեւորութիւն կը տրուի այս ճամբորդութեան եւ կը կարծուի թէ կապ ունի Թուրքիոյ կողմէ զինուորական պիտոյքներու մեծ յանձնարարութեան մը հետ:





## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

Կ. Կ.ի խորհրդակցական ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին պատուիրակութեան մէջ 71 Ave. Kléber.

Ժամը 7.30ին կը հրաւիրուին ներկայ գտնուիլ Փարիզի, Պուա.Քոլոմպի, Պիյեանքուրի կոմիտէութեանց եւ Ալֆորվիլի ու Արնուվիլ.Սարսէլի ենթակոմիտէութեանց ներկայացուցիչները:

ՇԱՎԻԼԻ Արդութեան խումբի ընկերներն ու ընկերուհիները ժողովի կը հրաւիրուին այս կիրակի ժամը 4ին ընկ. բժ. Տէր Դաւթեանի բնակարանը 27 Ave. Bellevue. Առանց կարեւոր պատճառի բացակայողները պատասխանատուութեան կ'ենթարկուին: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի ժողովը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ, պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայանալ անդամատոմսով:

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէի ժողովը, այս Կիրակի ժամը 3ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկայանալ անդամատոմսով:

ԼԻՈՆԻ Կուկունեան խումբի ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 2.30ին Գրադարանի սրահը, 11 Rue Dunoir.

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

Վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30—10.15: Ծրագրի մեկնաբանում (Ընկ. Պ. Հիւսեան), պատմութիւն նախայեղափոխական շարժման (Ընկ. Տ. Թաղօեան),

ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼԻ Երիտ. Երկսեռ Միութեան ընդհ. ժողովը այս Շաբաթ գիշեր ծանօթ հաւաքատեղին: Բոլոր անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ, վարչութեան ընտրութիւն:

ՊՐԻՒՔՍԷԼԻ ՍԷՆ ՏՐՄԻ եկեղեցիին մէջ (Eglise St. Remi, Boulevard du Gubilé) յունուար 18ի կիրակի ժամը 11ին. իսկ յաջորդ կիրակի 25 յունուար ժամը 10ին Անվերսի ՍԷՆԹ Անտրէ եկեղեցիին մէջ (Eglise St. André, Rue St. André) հայկական արարողութեամբ հանդիսաւոր Ս. պատարագներ պիտի մատուցանէ հայ կաթողիկոյ հոգեւոր հովիւ Յովհ. վրդ. Նալպանտեան: Հայաստանեայց եկեղեցւոյ երգեցողութիւնքն եռաձայն եւ ըստ Եկմալեանի պիտի կատարուին Պրիւքսէլի մէջ ՍԷՆ Րըմիի, իսկ Անվերսի մէջ ՍԷՆԹ Օկիւսթէնի պելժ երգչախումբերուն կողմէն:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Մ. Տ. Պ.— Զունինք:
Թարար, Լ. Ք.— 70:
Մարսէյլ, Մ. Մ.— 70:
Սէն Սաթիւրնէն, Զ. Գ.— 130:
Լիոն, Ս. Յ.— 268:
Վալանս, Գործ.— 553.05:
Լիոն, Գործ.— 1200:
Մարսէյլ, Գործ.— 1090:
Մարսէյլ, Տքթ, Ռ.— 70:








ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

Վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին, 71 Ave Kléber. Նիւթ՝ շարունակութիւն մտքերի փոխանակութեան Պ. Վրացեանի «խորհուրդների տասը տարին բանախօսութեան» առթիւ:

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

Ռուբէն Որբերեանի մահուան առթիւ՝ Ազգատախնամի Օրիորդաց Օժանդակ Միութեան պարահանդէսը որ տեղի պիտի ունենար Յունուար 25ին յետաձգուած է փետր. 15ին:

ՎԱՐԴԱՆԱՆՑ ՏՕՆԸ

Նախաձեռնութեամբ «Սիփան» երգչախումբի 14 փետրուար շաբաթ իրիկուն Salle Géographieի մէջ: Կը նախագահէ գեր. վռամշապուհ Սրբազան:

Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը:

«Սիփան» Երգչ. Վարչութ.



IMPRIMERIE - MASSIS
208bis, Rue Lafayette

Le Gérant H STE[...]

շուրջ. եւ թէ այս քննութիւնը կը վերաբերի մասնաւորաբար այս գործին մէջ կարգ մը հեղինակաւոր անձերու միջնորդութեան։

Միւս կողմէ, կարգ մը գերման գործարաններ ուղղակի դիմումներ կատարած են Պետական Երկաթուղիներու Վարչութեան, յայտնելով թէ քան միլիոնի պայմանագրութեան պայմաններէն աւելի նպաստաւոր գիներով կը հայթայթեն իրենք։

Այս կացութեան հանդէպ, պայմանագրութիւնը ջնջուելու պարագան կը ներկայանայ։ Ահա ասոր համար է որ Գրուփի ընդհ. տնօրէնը Էնկիւրի գացած է։

Այս պայմանագրութեան համաձայն, գերման գործարանները Թուրքիոյ պիտի յանձնեն 30 վայրաշարժ, 1500 վակոն, 70,000 թոնօ երկաթագիծ, կամուրջի մետաղեայ մասեր եւ երկաթուղիի զանազան առարկաներ, բոլորը 20 միլիոն թրք. ոսկի արժէքով, որուն վճարման համար Թուրքիա պիտի ստանայ փոքր տոկոսով երկարատեւ վարկ։

## Թուրքիա կը վերակազմէ իր տորմիղը

Թուրքիոյ կողմէ Իտալիա ապսպրուած երկու թորփիլահալածներուն շինութիւնը աւարտած է։ Մարտանաւերը կոչուած են «Գոզաթէփէ» եւ «Ատաթէփէ»։

Նոր թորփիլահալածները չորսական մեծ, երկերկու փոքր եւ մէյմէկ ալ սաւառնակի դէմ թնդանօթներ ունին։ Նաւերը խիստ լաւ զրահուած եւ շատ արագընթաց՝ վերջին դրութեամբ շինուած են,

Իտալիա ապսպրուած բոլոր նաւերը երբ լրանան, Թուրք ծովային ուժը արդիական զէնքերով օժտուած բոլորովին նոր տորմիղ մը պիտի ունենայ։

## Կովկասի խռովութիւնները

Վարշաւիոյ ճամբով հետեւեալ տեղեկութիւնները կը տրուին Մոսկուայէն, Կովկասի ըմբոստութիւններու մասին.— Կովկասի հիւս. շրջաններուն մէջ՝ խորհրդ. իշխանութեանց դէմ շարժող ըմբոստներու գործողութիւնը չէ մեղմացած։ Թիֆլիսի խորհրդ. աղբիւրներէ իսկ քաղուած վիճակագրական տեղեկութեանց համաձայն, 1930 Նոյ. 1էն մինչեւ 1931 յունուար 10 ըմբոստներն սպաննած են կոլխոզներու 7 կազմակերպիչներ, համագործակցական 5 տնօրէններ եւ քննիչներ, 8 տեղական խորհուրդի նախագահներ եւ համայնավար 12 յատուկ պատգամաւորներ։ Ասկից զատ, 12 անգամ զինեալ յարձակում գործած են գիւղական խորհուրդներուն վրայ, մեծ վնասներ հասցնելով։ Թիֆլիսի կրունէֆթի քարիւղային թրըսթի պաշտօնատարներն եւս յարձակման ենթարկուած են։

## Բոլշեւիկները կը սպառնան

ԼՈՆՏՈՆ, 18 յունուար.— Փրոֆ. Ուլայտ Հարթ որ վերջերս բոլշեւիկեան վայրագութեանց դէմ բողոքելու համար կազմուած կոմիտէի մը ամէնէն գործօն անդամն է, կը յայտնէ թէ սպառնալիք ստացած է առեւանգուելու, եթէ վերջ չտայ իր հակախորհրդային գործունէութեան։ Սպառնալիքը իրեն ուղղուած է մեքենագրուած նամակով մը։ Առաջին անգամը չէ որ փրոֆ. Հարթ նման սպառնալիքներու կ'ենթարկուի։ Ասկից առաջ արգէն, անծանօթ մը որ կրցեր էր փախուստ տալ, փորձած էր զինքն սպաննել հրացանով։

## Ամերիկա համայնավարներուն դէմ

Համայնավար գրգռութիւնները քննելու համար կազմուած խորհրդարանական յանձնախումբը իր տեղեկագրին մէջ, զոր ներկայացուց ամերիկեան խորհրդարանին, հետեւեալ արմատական միջոցները կ'առաջարկէ.— 1) ապօրէն յայտարարել ամերիկեան համայնավար կուսակցութիւնը,— 2) Նոր տրամադրութիւններ աւելցնել գաղթային օրէնքին վրայ, որպէսզի կարելի ըլլայ արգիլել համայնավարներու Ամերիկա մուտքը եւ անմիջապէս երկրէն արտաքսել օտար համայնավարները,— 3) բարեփոխել հպատակութեան օրէնքը, որպէսզի համայնավարները զրկուին ամերիկեան քաղաքացիի իրաւունքներէն,— արգիլել համայնավար քարոզչական դրականութեան մուտքը Ամերիկա, ու դեռ կարգ մը խստութիւններ։



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական վայրը, կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն, ներկայանալ անդամատետրով։

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Դրադարանին մէջ, 11 Րիւ տիւ Տիւնուար։

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան գրական երեկոյթը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Դրադարանի սրահը, 11 Րիւ Տիւնուար։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱՌՆՈՒՎԻԼ լէ կոնէսի երիտասարդութեան փափաքով, Պ. Սաքօ Յակոբեան սիրայօժարստանձնած է տեղւոյս մէջ երգչախումբ մը կազմել։ Երկսեռ երիտասարդութիւնը կը հրաւիրուի 22 յունուար Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Պ. Նիկողոսեանի սրճարանը, 121 Ave. de l'Uniou, Առնուվիլ լէ կոնէս։

Հ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Պ. Ա. Շահխաթունի։ Մէկ ժամ սինէմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Քոկոլէն, Մ. Թ.— 140։
Մէքնէս, Պօղ.— 143։
Լէքարնա, Մ. Ա.— 100։
Մարսէյլ. Անտ.— 95։
Իզէօ, Սող.— 35։
Փարիզ, Ա. Պ.— 100։
Նէօյեի, Իշխ. Ա.— 35։
Պուա Քոլոմպ, Կ. Տ.— 70։
Վիլֆրանշ, Ա. Խ.— 35։
Փորթլէնտ, Տէր. Ա.— 5 տոլար։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Վռամշապուհ Մարտիկեան կը փնտռէ իր մայրը Զապէլ (Երզնկացի, ծնեալ Շաւարշեան) ամուսինը Գէորգ, մեծ զաւակը Երուանդ՝ աղջիկը Իզաբել։ Կը կարծուի թէ 5 տարի առաջ կը գտնուէին Հալէպ։ Իմացնել՝ Karagueussian Home, La Gaudiniere, la Ville-aux-Cleres, Loir et Cher, France.

ԵՐԳՉՈՒՀԻ Օր. Լուիզ Աղապէկեան, հիւանդութեան պատճառաւ չպիտի երգէ վաղը իրիկուն Տրանսիի մէջ։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Գալով ապագայ սահմանադրութեան, Անգլիոյ վարչապետը յայտնեց.— կառավարութիւնը իր տեսակէտը հիմնած է մեկնելով բոլոր հատուածներուն կողմէ ընդունուած հիմերը, այսինքն թէ՝ կեդրոնական կառավարութիւնը պէտք է որ ըլլայ համահնդկական դաշնակցութիւն մը, որ իր մէջ բովանդակէ անկախ պետութիւններն ու անգլիական Հնդկաստանը՝ ծերակոյտով եւ խորհրդարանով։ Նոր կառավարութեան կազմն ու ձեւը պէտք է կրկին խորհրդակցութեան ենթարկուին իշխաններուն եւ անգլիական Հնդկաստանի ներկայացուցիչներուն կողմէ։

Ելմտական տեսակէտով, Անգլիոյ վարչապետը անհրաժեշտութիւնը յիշեց կարգ մը երաշխիքներու, պահպանելու համար Հնդկաստանի ելմտական վարկն ու կայունութիւնը։ Նաեւ, յայտնելէ վերջ թէ փոքրամասնութեանց իրաւունքները պէտք է որ յարգուին, առաջարկեց որ զանազան հատուածներ իրենք իսկ իրենց մէջ կարգադրեն տարակարծութիւնները։

## Ռուսիա եւ Թուրքիա Ժընեւի մէջ

Ժընեւի մէջ գումարուող Համեւրոպայի ուսումնասիրական յանձնախումբը զբաղեցաւ տնտեսական հարցերու քննութեամբ, առանց սակայն որեւէ գործնական դարման մը գտնելու տագնապին դէմ։

Ժողովը վերջացաւ վեց հոգինոց յանձնախումբին առաջարկովը՝ Ռուսիոյ եւ Թուրքիոյ մասնակցութեան մասին։ Ահա բանաձեւը որ այդ առթիւ ներկայացուեցաւ եւ ընդունուեցաւ. — Եւրոպայի Միութեան ուսումնասիրական յանձնախումբը՝ ի նկատի ունենալով Ազգերու Դաշնակցութեան 1930 սեպտեմբեր 17ի որոշումը, կ՚որոշէ համաշխարհային տնտեսական տագնապը ուսումնասիրել այնչափով որ կը հետաքրքրէ եւրոպական պետութիւնները եւ Ազգերու Դաշնակցութեան ընդհ. քարտուղարութեան միջոցով հրաւիրել Իսլանտայի, Թուրքիոյ եւ Ռուսիոյ կառավարութիւնները որ մասնակցին այս ուսումնասիրութեան։

## Ազգերու Դաշնակցութեան խորհուրդը

Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդի 62րդ նիստը բացուեցաւ Ժընեւի մէջ, նախագահութեամբ Անգլիոյ արտաքին նախարար Հէնտըրսընի։ Ժողովը նախ զբաղեցաւ իր օրակարգի մշակումով։ Առաջին առթիւ պիտի զբաղի զինաթափութեան յանձնախումբի տեղեկագրով եւ ապա Վերին-Սիլեզիոյ մէջ, գերման փոքրամասնութեանց պաշտպանութեան հարցով։ Խորհուրդը պիտի զբաղի նաեւ զինաթափութեան խորհրդաժողովի նախագահութեան, վայրի եւ թուականի հարցերով։

## Երկու միլիոն գործաւոր կը պատրաստեն

Բոլշեւիկեան «Իզվեստիա» թերթը կը հրատարակէ կառավարական հրովարտակ մը, «որակեալ բանուորներու պատրաստութեան վերաբերեալ»։

Այս հրովարտակը կը հրահանգէ Աշխատանքի գործավարութեան 1931ի ընթացքին ապահովել 2 միլիոն նոր գործաւորներ եւ պաշտօնեաներ՝ պետութեան տնտեսական ձեռնարկներուն համար։

Առաջին առթիւ, պատրաստուած բանուորները պիտի գործածուին ծանր ճարտարարուեստի, փոխադրութեան, շինութեան եւ երկրագործութեան կարեւոր ճիւղերու մէջ։

Նոր գործաւորները պիտի առնուին գործաւորներու, պաշտօնեաներու, աղքատ եւ միջակ գիւղացիներու, երկրագործներու ընտանիքներէն։

Խորհրդային ճարտարարուեստը կը նեղուի ձեռքի պակասէն. որովհետեւ օրավարձքերու նուազման եւ սննդեղէնի պակասին պատճառով, ռուս գործաւորները կը հեռանան գործարաններէն եւ հանքերէն, գիւղերն ապաստանելու համար։

Գործաւորներու այս փախուստը արգիլելու համար, խորհրդային կառավարութիւնը ասկից մէկ քանի ամիսներ առաջ ջնջեց անգործութեան նպաստը եւ հրահանգեց որ անգործները ստանձնեն ինչ գործ որ իրենց տրուի, առանց նկատի առնելու անոնց արհեստներն ու ընդունակութիւնները։

Նոր հրովարտակը նոր ձեւ մը կը նկատուի աշխատաւորները ճնշելու։













## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին սովորական վայրը, կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն, ներկայանալ անդամատետրով։

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Դրադարանին մէջ, 11 Րիւ տիւ Տիւնուար։

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան գրական երեկոյթը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Դրադարանի սրահը, 11 Րիւ Տիւնուար։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Պ. Ա. Շահխաթունի։ Մէկ ժամ սինէմա։ Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները։

Զ. Ե. Ո. Միութեան Եփրատ Նուագախումբը որ մէկ տարիէ ի վեր կազմուած է, կը ստանձնէ նուագել հայկական, եւրոպական եւ կովկասեան եղանակներ երեկոյթներու, հարսանիքներու, նշանախօսութեանց եւն.ի մէջ։

Պայմաններու համար դիմել՝ D. Onossianի 77-75 Allée de la Seine Issy-les-Moulineax, (Seine)։

Ծանօթ։ «Եփրատ» նուագախումբին անդամագրուիլ փափաքողներէ կը խնդրուի դիմել անձամբ կամ նամակով վերի հասցէին։

ՆԵՐԿԱՅԻՍ կը յայտարարուի թէ Հ.Բ.Ը.Մ.Միութեան Շուլլ-Դարիէրի Էսմէրեան կալուածին մէջ 7 բնակարաններ տրամադրելի ըլլալով, փափաքողները կրնան դիմել Հ. Բ. Ը. Միութեան գրասենեակը, 11 Սքուար Ալպոնի, տեղեկանալու համար վարձակալութեան պայմաններուն։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Վաւաշապատ Մարտիկեան կը փնտռէ իր մայրը Զապէլ (Երզնկացի, ծնեալ Շաւարշեան) ամուսինը Գէորգ, մեծ զաւակը Երուանդ՝ աղջիկը Իսգուհի։ Կը կարծուի թէ 5 տարի առաջ կը գտնուէին Հալէպ։ Իմացնել՝ Karagueussian Home, La Gaudiniere, la Ville-aux-Cleres, Loir et Cher, France.



Le Gérant H STEPHAN



## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Քրայովա Մ. Ս. 500 ֆր.,
Մարսէյլ Ա. Ս. 70
» Մար. 20
Վիրոֆլէ Մ. Զ. 70
Թուր Ա. Պ. 100
Մարսէյլ Հ. Ս. 280
Լիոն Ս. Թ. 20
Շաս Գ. Տ. 35
Լա Սիօթա Ղ. Ա. 105
Թուլոն Կ. Փ. 70

եկող օտարականին բարոյականին մասին խոր քննութենէ մը եւ անոր ինքնութեանը մասին անհրաժեշտ ստուգումները կատարելէ վերջ։ Անկից զատ, եթէ օտարականը եկած է իբր աշխատաւոր, բնակութեան իրաւունքը կը տրուի օտար աշխատաւորներու սպասարկութեան համամտութիւնն ստանալէ վերջ միայն։

«Անբաղձալի օտարականներու դէմ հետեւեալ միջոցները կը գործադրուին, 1) կանոնաւոր ինքնութեան թուղթ չունեցողները կը վերադարձուին իրենց երկիրը— 2) Մեր երկրին հանդէպ հաւատարմութեան եւ իրենց անհատական բարոյականին մասին բաւարար երաշխիքներ չներկայացնող օտարականները կը զրկուին բնակութեան իրաւունքէ,— 3) 1849 դեկտ. 3ի օրէնքին 7րդ յօդուածին տրամադրութեան համաձայն, Ներքին Նախարարին հրամանագրով, երկրէն կ'արտաքսուին։

«Այս միջոցին կը դիմենք այն օտարականներուն դէմ, որոնց ներկայութիւնը մեր երկրին մէջ, վտանգ մը կրնայ կազմել ընդդէմ հանրային կարգի եւ ապահովութեան։ Այս մասին, օրինազանցումները կամ անսաստումները կ'ենթարկուին դատական խստութեանց։

«Ոստիկանական տնօրէնութիւնը կը կատարէ բազմաթիւ եւ մանրակրկիտ ստուգումներ, ապահովելու համար խիստ գործադրութիւնը արտաքսման հրամաններուն եւ դատարան յանձնելու համար բոլոր այն օտարականները որոնք դէմ գործած են իրենց մասին տրուած որոշումներուն։

«Այս պատճառով, յանցաւորներու դէմ կատարուած դատական հետապնդումներու թիւը 1929ին եղած է 557 եւ 1930ի առաջին 11 ամիսներուն 511, միայն Փարիզի մէջ։

«Օտարականներու հսկողութիւնը սաստկացնելու համար, որոշուած է որ ոստիկանութեան կեդրոնին մէջ հաստատուած յատուկ սպասարկութենէն զատ, արուարձանի իւրաքանչիւր ոստիկանութիւն ունենայ օտարականներու յատուկ իր արձանագրութիւնները։ Այսպէս, օրը օրին կատարուած քննութիւններ եւ ստուգումներ թոյլ պիտի տան լաւագոյն կերպով հսկելու Փարիզի բնակչութեան ապահովութեան վրայ։

## Երկրագործական տագնապին շուրջ

Ազգերու Դաշնակցութեան Եւրոպական յանձնախումբը հետեւեալ տրամադրութիւնները ընդունեց իբր դարման կեդրոնական Եւրոպայի մէջ տիրող երկրագործական տագնապին։ Նախաբանի մը մէջ, յանձնախումբը կը յայտնէ թէ կեդր. Եւրոպայի մէջ տիրող երկրագործական տագնապի սաստկութեան հետեւանքով, անհրաժեշտ է որ եւրոպական պետութիւնները անմիջապէս սկսին իրարու օժանդակել, առանց սպասելու ցորենի համաժողովին որոշումներուն, քանի որ ան մարտին պիտի գումարուի Հռոմի մէջ ուսումնասիրելու համար երեւոյթը ամբողջ աշխարհի մէջ։

Յանձնախումբի որոշումները երեք մասի կը բաժնուին. Ա.—1930ի բերքին աւելցուքը սպառել Եւրոպայի ներածող երկիրներուն մէջ, առանց նեղելու անոնց ազգային տնտեսութիւնը։

Բ.— Այս նկատումով յանձնախումբի նախագահը փետրուարի ընթացքին պիտի հրաւիրէ եւրոպական պետութեանց ներկայացուցիչները, անոնց հետ խորհրդակցաբար գտնելու եղանակ մը, որով կարելի ըլլայ ներածող եւ արտածող երկիրներուն միջեւ համաձայնութիւն մը գոյացնել։ Գ.— Երկրագործական վարկի հարց։ 10 հոգինոց յանձնախումբ մը պիտի նշանակուի, որ Եւրոպայի ուսումնասիրական յանձնախումբի մայիսի նիստին պիտի ներկայացնէ երկրագործական վարկային կազմակերպութեան մը ծրագիրը, միջազգային հիմերու վրայ։

## Փարիզի թուրք դեսպանը

Թուրքիոյ փարիզեան նոր դեսպանը Մունիր երեքշաբթի օր իր լիազօրագիրը ներկայացուց Ֆրանսայի հանրապետութեան նախագահին։



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՊԻՑԵԱՆՔՈՒՌԻ Զաւարեան խումբի վիճաբանական ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին ծանօթ հաւաքատեղին։

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Մուրատ խումբի ժողովը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8ին 186 Ave. Verdun Իսի լէ Մուլինօ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Ընկ. Բենօէ կը խնդրուի ներկայ ըլլայ այս ժողովին։

ԳԱՐԱՌ

ՎԱԼԱՆՍԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Քրիստափոր, Բաքէն Սիւնի եւ Կայծակ ենթակոմիտէներու բոլոր ընկերները այս կիրակի առաւօտ ժամը 9ին։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայանալ անդամատետրով։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՄՈՒՐԱՏԵԱՆ վարժարանի կազմակերպած տարեկան բանախօսութիւններու երկրորդը տեղի կ'ունենայ այս կիրակի ժամը 3ին, վարժարանին դահլիճին մէջ, 26 Rue Troyon, Sèvre։ Կը խօսի՝ Տօքթ. Վ. Թորգոմեան։ Նիւթ՝ «Մխիթար աբբահօր կեանքն ու գործունէութիւնը»։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Տէսին, Տիկ.— Ս Թ.— 70։
Վիէն, Ս. Ե.— 35։
Քան, Յ. Ս.— 35։

## ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.00ին. 71 Ave. Kléber։ Կը կարդացուի Տիկին Շ. Խանզատի «Հին Թիֆլիզը եւ Սանդուկեանի տիպերը» աշխատութիւնը, որմէ յետոյ տեղի կ'ունենայ վիճաբանութիւն։

## ՎԱՐԴԱՆԱՆՑԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Կուկունեան խումբի կողմէ։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

ՆԵՐԿԱՅԻՍ կը յայտարարուի թէ Հ.Բ.Ը.Մ.Միութեան Հուլլ-Դարիէրի էսմէրեան կալուածին մէջ 7 բնակարաններ տրամադրելի ըլլալով, փափաքողները կրնան դիմել Հ. Բ. Ը. Միութեան գրասենեակը, 11 Սքուար Ալպոնի, տեղեկանալու համար վարձակալութեան պայմաններուն։

Զ. Ե. Ռ. Միութեան Եփրատ նուագախումբը որ մէկ տարիէ ի վեր կազմուած է, կը ստանձնէ հայկական, եւրոպական եւ կովկասեան եղանակներնուագել երեկոյթներու, հարսանիքներու, նշանախօսութեանց եւն.ի մէջ։

Պայմաններու համար դիմել՝ D. Onossianի 77-75 Allée de la Seine Issy les Moulineaux, (Seine)։

Ծանօթ։ «Եփրատ» նուագախումբին անդամագրուիլ փափաքողներէ կը խնդրուի, դիմել անձամբ կամ նամակով վերի հասցէին։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Վռամշապուհ Մարտիկեան կը փնտռէ իր մայրը Զապէլ (Երզնկացի, ծնեալ Շաւարշեան) ամուսինը Գէորգ, մեծ զաւակը Երուանդ՝ աղջիկը Իւղաբեր։ Կը կարծուի թէ 5 տարի առաջ կը գտնուէին Հալէպ։ Իմացնել՝ Karagueussian Home, La Gaudinière, la Ville-aux-Clercs, Loir et Cher, France.

— Կը փնտռուի Շապին Գարահիսարցի Պայծառ Քէօրիւքճեան որ քանի մը ամիս առաջ Պօրտօէն եկած է Փարիզ իր 3 տարեկան զաւակին հետ։ Մինչեւ այսօր իր հասցէն յայտնած չէ իր ամուսնոյն։ Շապին Գարահիսարի Հայր. միութենէն եւ հայրենակիցներէ սրտպողաբար կը խնդրուի վերոյիշեալ կնոջ հասցէն իմացնել «Յառաջ»ի վարչութեան։

Կ'ուզուի երիտասարդ triporteur մը որ գիտնայ լաւ ֆրանսերէն։ Դիմել Խաչիկեանի, 65 Rue St. Anne, Փարիզ։



## ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

Մարսէյլի Հ. Յ. Դ. Միութեան «ԳՈՅԱՄԱՐՏ» ցոյցը, ճոխ բովանդակու[թեամբ] եւ հերոսներու նկարներ[ով] ... մել Ճարալեանի, 14 Rue Fare, Marseille. կամ Յ[առաջի] վարչութեան։

Գին՝ 6 ֆրանք, փոստի ծախ[ք]ով 6.50 ֆր.։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Նախարարական տագնապը

Ինչպէս կ՚ենթադրուէր, հանրապետութեան Նախագահը՝ դահլիճի կազմութիւնը առաջարկեց արտաքին Նախարար Պ. Պրիանի որ սակայն մերժեց, որմէ յետոյ գործը յանձնուեցաւ Սէնի ծերակուտական եւ Նախկին Նախարար Փիէր Լավալի։ Կը յուսացուի որ Պ. Լավալ այս անգամ նուազ դժուարութեանց պիտի հանդիպի կազմելու համար դահլիճը, շնորհիւ ստեղծուած համերաշխական մթնոլորտին։

Կը վախցուէր մանաւանդ արմատականներէն, որոնք իրենց մէկ նիստին մէջ, բանաձեւով մը որոշեցին ուժ տալ այն կառավարութեան որ «պիտի պահպանէ եւ զարգացնէ աշխարհական օրէնքները եւ հետապնդէ խաղաղութեան քաղաքականութիւն մը»։

Պ. Լավալ երկու օրէ ի վեր տեսակցութիւններ կ՚ունենայ կուսակցութեանց պետերու եւ քաղաքական ծանօթ անձնաւորութեանց հետ, իր դահլիճը յաջողցնելու համար։

## Ռուսիա եւ զինաթափութեան ժողովը

Բոլշեւիկեան «Թաս» գործակալութիւնը կը հրատարակէ երկար զեկոյց մը որուն համաձայն Խորհ. կառավարութիւնը կը զգացնէ թէ որովհետեւ զինաթափութեան համագումարի նախագահի ընտրութիւնը կատարուած է առանց իր մասնակցութեան, ինքզինքը կապուած չի նկատեր նման որոշումներով։ Իսկ բոլշեւիկեան պաշտօնաթերթը «Իզվեստիա» մեկնաբանելով զինաթափութեան համագումարի մասին տրուած կարգ մը տեղեկութիւններ, կը գրէ թէ իր գործավարներուն միջոցաւ, Խորհրդային Միութեան կառավարութիւնը յստակօրէն յայտնած է իր տեսակէտը։ Նման որոշումներ բացարձակապէս անընդունելի են Խորհ. Միութեան համար եւ կը ծառայեն զայն դուրս ձգելու համագումարի մասնակցութենէն։

## Նախ խաղաղութիւն...

«Պէտք է պատրաստուիլ պատերազմի» կը յայտարարէ Վորոշիլով. Խորհ. Միութեան պատերազմական գործավարը որ ինչպէս գրեր էինք մէկ քանի օրառաջ, ուղմաշունչ ճառ մը արտասաներ էր երիտասարդ համայնավարներու համագումարին մէջ։

«Թաս» գործակալութիւնը կը հրատարակէ Վորոշիլովի ճառը, որմէ կը քաղենք հետեւեալ հատուածները։— Իրաւունք չունինք նոյնիսկ մէկ րոպէ աչքէ հեռացնելու վտանգը որ մեզ կը սպառնայ դուրսէն։ Հանրածանօթ գերման զօրավարը Լուտէնտորֆ, որ ատենին նախատեսած էր պատերազմը, գրքին մէջ կը գուշակէ համաշխարհային նոր պատերազմ մը, ինչ որ վտանգը կը հաստատէ։»

Լուտէնտորֆի գիրքէն մէկ քանի հատուածներ յիշելէ յետոյ, Վորոշիլով կը շարունակէ.— Այս գործի մարդը եւ զինուորական մեծ մասնագէտը ո՛չ միայն պատերազմը կը գուշակէ մօտ ատենէն, այլ նոյն իսկ անոր ելքն ալ կը ճշդորոշէ։ Լուտէնտորֆի կարծիքը լրացնելու համար, կարելի է յիշել ամենէն աւելի հեռատես քաղքենի քաղաքագէտներու, զինուորականներու, գրողներու, տնտեսագէտներու վկայութիւնները։ Անոնք բոլորը համամիտ են Լուտէնտորֆի։»

«Հակախորհրդային պայքարը զոր շարունակ կը մղեն օտար պետութիւնները ու կը հիմնեն այն առասպելին վրայ թէ «Կարմիր Մոսկուա»ն աղբիւրն է դրամատիրական ընկերութեան բոլոր չարիքներուն, համաշխարհային տնտեսական տագնապին, զարհուրելի սպառազինումներուն, յստակօրէն կը մատնանշէ թէ յառաջիկայ պատերազմը գլխաւորաբար պատրաստուած է ընդդէմ Խորհրդ. Միութեան։

«Այս յարձակման դէմ պէտք է կանգնի բոլշեւիկեան բանակը կատարելապէս մարզուած, լաւ զինուած եւ քաղաքականապէս ամուր։ Պէտք է այնպէս ընենք որ յառաջիկայ պատերազմին, յաղթանակը շահինք կարելի եղածին չափ քիչ արիւն թափելով։ Այդ պատերազմը պէտք է որ մղուի այն երկրին մէջ իսկ, որ ամենէն առաջ սուրը պիտի քաշէ մեզ դէմ»։

Ցայտնելէ յետոյ թէ յառաջիկայ պատերազմը ամբողջովին մեքենական պիտի ըլլայ, եւ թէ վճռական դերը մեքենաներունը պիտի ըլլայ, Վորոշիլով հրաւիրեց երիտասարդները որ ուժ տան ինչպէս սովորական աշխատանքին, նոյնպէս եւ մանաւանդ պատերազմական նիւթեղէնի արտադրութեան։

## Երկաթուղիներու համար մարդահաւաք

Երկաթուղիի նախկին պաշտօնեաները հաւաքելու գործը արագօրէն առաջ կը տարուի ամբողջ Խորհրդ. Միութեան մէջ։ Տակաւին յայտնի չէ թէ քանի՞ հոգի հաւաքուած են եւ ինչ չափով նախկին պաշտօնեաները կը պատասխանեն կոչին. սակայն կը կարծուի թէ քանի մը տասնեակ հազար անձեր արդէն հաւաքուած են։ Բոլոր նախկին պաշտօնեաները ստիպուած են արձանագրուիլ։ Անոնք որ չեն հնազանդիր կոչին, ինչպէս նաեւ անոնք որ գաղտնի ապաստան կուտան անոնց, կը պատժուին խստօրէն։

Փոխադրութեանց սպասարկութիւնը նկատուած է ամենէն տկար կէտը «տնտեսական ճակատ»ին։

## Ծոգեկանի ընկերութիւնները դատաւոր

Խորհրդ. Միութեան գործավարներու խորհուրդը նոր որոշումով մը ընդլայնեց երկաթուղիի ընկերութեանց իրաւասութիւնները։ Անոնք ասկից վերջ ո՛չ միայն պիտի կրնան գործաւորները պատժել մինչեւ 10 տարի բանտարկութեամբ, այլ նաեւ մահուան պատիժ տալ անոնց։

Կառավարութիւնը միւս կողմէ, ձեռնարկած է վերակազմելու բանուորական սէնտիքաները, ապահովելու համար անոնց արագ համայնացումը։ Երիտասարդ համայնավարներու միջազգայինը որոշեց սաստկացնել իր քարոզչական գործունէութիւնը Անգլիոյ, Գերմանիոյ, Լեհաստանի եւ գաղթային երկիրներու մէջ։

Երիտասարդ համայնավարներընկատած են թէ իրենց գործակալները լաւ գործունէութիւն ունեցած են Չինաստանի մէջ, քանի որ վերջերս 6 երիտասարդ համայնավար գործիչներ հրացանի բռնուեցան այնտեղ...



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ կայծակ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30-ին Հ. Յ. Դ. Գրադարանը 11 րիւ Ցիւնուար։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի ժողովը վաղը չորեքշաբթի իրիկուն ժամը 8 30ին սովորական վայրը։ Ներկայանալ անդամատետրով։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Ռոան, կ. գ.— 35։
Պրիւքսէլ, գ.— 20։
Վիէն, Մ. Ն.— 50:
Վիէն, Ն. Խ.— 35։
Լանսէյ, գործ.— 410:
Սէն Շամոն, գ. Ա.— 50։
Մարսէյլ, գործ.— 950:
Մարսէյլ, Ս. Դ.— 420:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Ուրֆացի Գէորգ Տէր Աւետիսեան կը փնտռէ Ազէհիրի Պէյէտիէ ուստա պաշիի զաւակները Զարեհ, Սեդրակ եւ տիկին Կուլիայ եւ իր զաւակը Սարգիս։ Երկու տարի առաջ միասին կը գտնուէինք Յունաստան։

Իմացնել՝ Կարապետ Հացագործեանի, 39 Rue de Ance, Villefranche S)Saône, Rhône. France.

— Տրապիզոնցի Զոլէնէ Հրապեան Հալէպ, կը փնտռէ իր հայրը Գրիգոր, Մայրը՝ փերուզ, քոյրերը Հրանուշ եւ Հերմինէ, եղբայրը Սմբատ, կը խնդրուի իրենց մասին տեղեկութիւն ունեցողներ է իմացնել՝ S. Tavitianի, 36 Rue Auguste Blanqui, Ghoisy le Roi. Seine France.




IMPRIMERIE - MASSIS -ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN

մար: Քէմալ Ատանայէն վերջ Մալաթիա-Ձէվգի Փաշա գիծին պիտի հետեւի եւ ճամբորդութիւնը պիտի երկարէ մինչեւ Էլազիզ:

Մ. Քէմալի առաջին ճամբորդութեան իբր հետեւանք, Ներքին գործավարութիւնը նոր օրինագծեր կը պատրաստէ: Ասոնց կարգին կը գտնուին կուսակալներու իրաւասութեանց ընդարձակման եւ ընդհ. քննչութեան օրինագիծերը: Այս օրինագիծերը գործավարներու խորհուրդին մէջ քննուելէ վերջ պիտի քննուին նաեւ Խալքի երեսփ. հատուածին կողմէ:

## Կարմիր Անաստուածները կը գործեն

Խորհր. Միութեան Թղթատարական եւ հեռագրական գործավարութիւնն ու Անաստուածներու միութիւնը համաձայնութեան եկան անթելի գործածութեան մասին: Անաստուածներու միութիւնը պարտաւոր պիտի ըլլայ կանոնաւոր կերպով հակակրօնական քարոզչութեան յայտագրեր պատրաստել եւ հսկել որ անոնք անթելի միջոցով տարածուին ամբողջ Ռուսիոյ մէջ, Լենինկրատի, Խարքովի, Մինսքի, Թիֆլիզի կեդրոններէն:

## Սպանիոյ խռովութիւնները

Սպանիա կը շարունակէ Յեալ խռովայոյզ վիճակի մէջ: Ոստիկանութիւնը բացառիկ միջոցներու դիմած է Մատրիտի մէջ, արգիլելու համար հաւանական խառնակութիւնները: Երեկոյեան ժամը 7էն սկսեալ, հետեւակ եւ ձիաւոր ոստիկաններ խումբ խումբ կը հսկեն քաղքին կեդրոնական վայրերը: Իսկ գլխաւոր պողոտաներու տանող փողոցները խիստ հսկողութեան տակ առնուած են: Արուարձաններու հսկողութիւնը յանձնուած է քաղաքային պահակներու:

Այս խիստ միջոցներու գործադրութիւնը կը վերագրուի համալսարանական շրջանակներու մէջ տիրող գրգռութեան:

Համալսարանի ուսանողները յայտարարած են դասադուլ որ հետզհետէ կը տարածուի նաեւ գաւառի վարժարանները: Շատ տեղերու մէջ ուսանողները ցոյցեր կատարած են:



**Հ. Յ. Դ. ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷՆ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ ԿԸ ՀՐԱՒԻՐԷ**

բոլոր ընկերները վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ օ Քլէռ տը Լիւնի վերնայարկը, փլաս տ'իթալի: Օրակարգ՝ կոմիտէի զեկոյց եւ ընթացիկ հարցեր,

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

Վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30—9.15, ներքին կանոնագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան): Ժամը 9.30 — 10.15, Պատմութիւն նախայեղափոխական շարժման (ընկ. Տ. Թաղօեան):

**ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ**

կազմակերպուած Մարսէյլի Հ. Յ. Դ. կոմիտէի կողմէ, այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 84՝ Րիւ Շար. Սալօն Շարի մէջ:

Կը ներկայացուի՝ **ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ**

Ղեկավարութեամբ Մ. Մարութեանի եւ մասնակցութեամբ ծանօթ ուժերու:

Գ ի ն ե ր ը՝ ժ ո ղ ո վ ր դ ա կ ա ն

**ԼԻՈՆԻ Հ. Յ. Դ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ**

Այս կիրակի առաւօտ ժամը 9.30ին Գ. Թաղապետարանի ընթերցասրահին մէջ,

Կը խօսի՝ ԸՆԿ. Վ. ՁՈՒԼՀԷՐԵԱՆ

Նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւնը որպէս պետական գործօն

**ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ**

կազմակերպուած Նիսի Հայ Լսարանական միութեան կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին Գրադարան-Ընթերցարանի մէջ (182 Bld. Madeleine)

Կը խօսի՝ Ա. Ա Բ Ո Յ Ե Ա Ն

Նիւթ՝ «Մեր ազգային բնաւորութեան գիծերը»

Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները Մուտքը ազատ է

**ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ**

կազմակերպուած «ՏՈՐՔ» Մարզական միութեան կողմէ

Այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Salles Harolaի սրահներուն մէջ, 3 Rue La Vieuville, մէթրօ Abbesses.

Արեւելեան նուագ յայտնի հայ նուագածուներու կողմէ մաս նաւոր սրահի մէջ, 8 հոգինոց ճազ՝ ղեկավարութեամբ դաշնակահար Պ. Կարմիրեանի: Մուտք 10 ֆրանք

## Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ԱՌՆՈՒՎԻԼ լէ Կոնէսի Ռազմիկ խումբի ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին ընկ. Յ. Խաչատուրեանի բնակարանը, ներկայանալ անդամատետրով եւ փակել առկախ մնացած հաշիւները:

**ԳԱՒԱՌ**

ԼԻՈՆԻ Պատ. Միութեան վիճաբանական ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ, 11 Rne Dunoir: Lyon, կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները,

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը խօսի Պ. Օհան Կարօ, նիւթ ունենալով Սայաթ Նովայի սիրոյ երգերուն մասին, մէկ ժամ սինէմա: Կը հրաւիրուին անդամներն ու համակիրները:

ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Ուսումնասիրաց միութեան ընդհ. ժողովը՝ այս կիրակի ժամը 2ին Սօսիէթէ Լիոնէզի ճաշասրահը, կը հրաւիրուին բոլոր սեբաստահայերը, Անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Օրակարգ՝ հաշուետւութիւն,

Հ. Մ. Ը, Մ.ի Պէլվիլի մասնաճիւղը խորհրդակցական ժողովի կը հրաւիրէ Պէլվիլի շըրջանի բոլոր նախկին Հ. Մ. Ը. Մ. Սկաուտները եւ համակիրները վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 131 Fbg. du Temple, Ռոստոմի գրադարանի սրահը:

ՏԵՍԻՆԻ Տարօն Տուրուբերանի միութեան պարգեւները շահեցան հետեւեալ թիւերը 503՝ հոտաւէտ իւղ, 417՝ հաւ, 304՝ նապաստակ, 564՝ օճառ եւ արծան, 140՝ արդուկ, 484՝ նկար եւ արծան, 314՝ զմելի, 539՝ գուլպայ, 172՝ հովանոց, 403՝ ժամացոյց, 192՝ պայուսակ: Պարգեւները ստանալու համար դիմել՝ անձամբ կամ նամակով A. Tanielianի, 26 Rue Arago, (Décines, Isère):

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Ուրֆացի Գէորգ Տէր Աստուրեան կը փնտռէ Ազգէհիրի Պէլէտիէ ուստա պաշիի զաւակները Զարեհ, Սեդրակ եւ տիկին Կուլիայ եւ իր զաւակը Սարգիս: Երկու տարի առաջ միասին կը գտնուէինք Յունաստան:

Իմացնել՝ Կարապետ Հագոպեանի, 39 Rue de Ance, Villefranche S)Saône, Rhône. France.

— Կը փնտռուի կարնեցի լումայափոխ Աստուր աղայի որդին Յարութիւն Սարաֆեան, իմացնել՝ Փափազեանի, 4 Rue Beaudélique, Paris (18).




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Զ. Ե. Ռ. Մ.-Ի ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## Աշխատանքի Տագնապը

(պատասխան Յառաջի հարցարանին)

### ԿԵԱՆՔԸ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

ՎԱԼԱՆՍ, 27 յունուար.— Նախ քանի մը ընդհանուր տեղեկութիւններ։ Վալանս ճարտարարուեստի առեւտրական տեսակէտով կը հանդիսանայ ոռկերչութեան երկրորդ կեդրոնը, որ ունի քանի մը տասնեակ մանր եւ խոշոր աշխատանոցներ։ Այս է Վալանսի գլխաւոր ճարտարարուեստը։ Մեր հայրենակիցները կ'աշխատին հետեւեալ գործերուն մէջ — Երկաթուղիի վակոններու նորոգութեան գործարանը (Chantier Têtard) 350-400 բանուոր։ Վալանսի ամենամեծ գործարանն է։ Օրավարձ 25 30-32 ֆրանք։

նայարմարը Թուրի շրջանն է) առգարակ մը գնուի, որպէսզի հայ երիտասարդութիւնը եւ չափահաս որբութիւնը արդիւնաբերական աշխատանքի լծուին, ազատուելով մի անգամ ընդ միշտ ձուլումի եւ գործազրկումի յարատեւ մղձաւանջէն։

Հիանալի գաղափար։

Ցաւիտենապէս տարագիր ժողովուրդ մը, ազգային ցաւեր, ձուլում, տնտեսական տագնապ, եւ նման սրտակեղեք նիւթեր։ Այս բոլորէն զատ վէճերու բամբասանքներ։ Չկայ ուժերու կեդրոնացում, չկայ համագործակցութեան ոգի։

Այս պարագաներուն տակ դժբախտաբար ես կը մղուիմ ըսելու թէ այդ որբին ինչպէս նաեւ բոլոր որբերուն նման գործ-

## ԹՈՒՐՔԻԱ

### «ՎԼՈՓՈՐԸ ԿԸ ՓԱՆԱՅ»

## ՕՐ. ՎԵՐԺԻՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

ԵՒ

## ԸՆԿ. ԴԱՒԻԹ ԵՐԱՄԵԱՆ

*Ամուսնացած*

17 յունուար 1931 փոնտշէրի

բար վերի մասը 1940ին պիտի նմանի Բաբելոնի եւ Նինուի աւերակներուն, ու թերեւս աւելի գէշ դառնայ։ Որովհետեւ տուները փայտաշէն են եւ անոնց հետքն անգամ չպիտի մնայ։ Վլոփորը ուտելէ յետոյ Շիրքէթը ինքզինքն ալ պիտի ուտէ։

— Նէճմէտտին Մօլլա պէյ, կը կտրէք ճիւղը որուն վրայ նըստած էք։ կարելի չէ թիավարել հոսանքին դէմ...»

### ՕՏԱՐՆԵՐՈՒՆ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

6 Օգոստոս, 1924ին, երբ Լօզանի դաշնագիրը կնքուեցաւ

## ՀԱՅԵՐՈՒ ՈՒՍԱՐՈՒԹԵԱՆ

## ՍՏԱՑԱՆՔ

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### ԱՌԱՋԱՐԿԻ ՄԸ ԱՌԹԻՒ

## ԲՈԼՈՐԻՆ ՄԷԿ ՊԱՏԱՍԽԱՆ

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՆԻՒԹԵՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ (7)

# ՏԱՍԸ ՏԱՐԻ ԱՌԱՋ

Վ. ԱՀԻ ԱՐԾՐՈՒՆԻ

(Շար.)

Կարդացէք և Տարածեցէք ՅԱՌԱՋը

## ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ

*Այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30էն 9.30 ներքին կանոնագրի մեկնաբանում (ընկ. Պ. Հիւսեան)։*

*Ժամը 9.30էն 10.15 Հայ Գրականութեան պատմութիւն (ընկ. Պ. Մինասեան)։*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*կազմակերպուած Մարսէյլի Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ, այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 84 Րիւ Շաբ. Սալօն Շարի մէջ։*

*կը ներկայացուի՝* ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ

*Ղեկավարութեամբ* Մ. Մարութեանի *եւ մասնակցութեամբ ծանօթ ուժերու*

*Գիները՝ ժողովրդական*

## ԼԻՈՆԻ Հ. Յ. Դ. ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

վաղը կիրակի առաւօտ ժամը 9.30ին գ. Թաղապետարանի ընթերցասրահին մէջ։

*Կը խօսի՝ ԸՆԿ. Վ. ՁՈՒԼՀԷՐԵԱՆ*

Նիւթ՝ Հ. Յ. Դաշնակցութիւնը որպէս պետական գործօն

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*կազմակերպուած Նիսի Հայ Լսարանական միութեան կողմէ Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին Գրադարան-Ընթերցարանի մէջ*

(182 Bld. Madeleine)

*կը խօսի՝ Ա. ԱԲՈՅԵԱՆ*

*Նիւթ «Մեր ազգային բնաւորութեան գիծերը»*

կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները Մուտքը ազատ է

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*կազմակերպուած «ՏՈՐՔ» Մարզական միութեան կողմէ*

Այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Salles Harolaի սրահներուն մէջ, 3 Rue La Vieuville, մէթրօ Abbesses.

Արեւելեան նուագ յայտնի հայ նուագածուներու կողմէ մասնաւոր սրահի մէջ։ 8 հոգինոց ճազ՝ ղեկավարութեամբ դաշնակահար Պ. Կարմիրեանի: Մուտք 10 ֆրանք

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

ղեկավար՝ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆ

THEATRE RENÉE MAUBEL 8-10 RUE DE L'ORIENT

8րդ տարի 120րդ ներկայացում

*Վարդանանցի տօնին առթիւ ժողովրդական մեծ ներկայացում 14 Փետր. Շաբաթ գիշեր ժամը ճիշդ 8.30ին կը ներկայացուի*

## ԱՆՄԱՀՆ ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

*Պատմական շքեղ հագուստներով եւ նոր տէքօրներով, դիւցազներգութիւն 5 արար եւ 2 պատկեր:*

*Գիները՝ 175 օթեակ, 20—15 ֆօթ. 10 պալգ. Խճողումի տեղի չտալու համար կանխաւ ձեր տեղերը ապահովեցէք սովորական վայրերէն*

*ԾԱՆՕԹ.— Միեւնոյն ներկայացումը դարձեալ նոր հագուստներով Պուա Քոլոմպի մէջ, 15 Փետրուար կիրակի գիշեր ժամը 8.30ին Թաղապետական Թատրոնին մէջ (Րիւ տէ Հալ)*

*Մուտք Ա. կարգ 7.50 ֆր. Բ. կարգ 5 ֆր. Տոմսերը ստանալու համար դիմել Գառնիկ Յովհաննէսեանին 2 Րիւ Վիքթոր Հիւկօ։*

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*ԱՆԻԷՌ Պուա-Քոլոմպի Զէյթուն Կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս երեկոյ ժամը 8.30ին, 79* Rue des Chambards. *Պուա-Քոլոմպ։ Շատ կարեւոր օրակարգ։ Բացակաները պատասխանատուութեան պիտի ենթարկուին։*

*ԳԱՒԱՌ*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ Սէն Լուի ընկերները այս Կիրակի առաւօտ ժամը 10ին տեղւոյն վրայ: Ներկայ կ'ըլլան Մարսէյլի վարչութեան ներկայացուցիչները։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 5ին 63 Րիւ տը լա Րէփիւպլիք։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան խումբի ժողովը այս Կիրակի ժամը 5ին ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։*

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Հ. Կ. ԽԱՉԻ Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը՝ այս կիրակի ժամը 2.30ին 63* Rue de la République. *Խիստ կարեւոր օրակարգ. Կը հրաւիրուին բոլոր գործօն եւ օժանդակ անդամուհիները ներկայ ըլլալ այս ժողովին։*

ՍԵԲԱՍՏԻՈՅ Նահանգային Ուսումնասիրաց միութեան ընդհ. ժողովը՝ այս կիրակի ժամը 2ին Սօսիէթէ Լիոնէզի ճաշասրահը, կը հրաւիրուին բոլոր սեբաստահայերը, Անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Օրակարգ՝ հաշուետուութիւն,

*ԼԻՈՆԻ ՍԻՒՐԻՆԻ Հայր. միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 1.30ին Գ. Թաղապետարանի սրահը։ Կը հրաւիրուին անդամներն ու անդամուհիները։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։*

*Ա. Ե. Հ. Կ. Խաչի Ալֆորվիլի Մասնաճիւղը կը հրաւիրէ Ալֆորվիլի հայրենակիցները ներկայ գտնուիլ իր կազմակերպած Երեկոյթ Թէյասեղանին, որ տեղի կ'ունենայ այս երեկոյ ժամը 7.30ին, Մութաֆեան սրճարանի մէջ,* Rue Etieune Dolet, Alforville.

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Մեր հայրենակ ընկերոջ ԱՐՇԱԿ ՔՕԼԷԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ մեր խորին ցաւակցութիւնները կը յայտնենք իր պարագաներուն։*

*Տարօնցի* Ս. Զաքարեան եւ Ն. Մխիթարեան։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ԱՐՇԱԿ ՔՕԼԷԵԱՆի դառնաղէտ մահուան առթիւ Ռընամի Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբը իր ցաւակցութիւնները կը յայտնէ իր պարագաներուն։*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Ըրնաժ, Վ. Խ.— 73 ֆր.։*

*Քոնսթանցա.— 1585։*

*Կարգադրեցինք։*

*Ռումանիոյ* մէջ Յառաջի գործակալն է՝ Պ. Խաչիկ Կարապետեան, 22 Rue St Nicola, Romans.

## ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

*Պօմոն եւ Սէն Ժուլիէնէն հաւաքուած է 246 ֆր., հաւաքիչներն են.— Ա. Թէրզեան, Ա. Վահրամեան, Ա. Տէրտէրեան, Գ. Ազարեան։*

*Է.— Լա Փօմ, Սէն Մարսէլ եւ Շատօէն հաւաքուած է 264 ֆրանք, հաւաքիչներն են.— Ա. Վահրամեան, Ա. Տէրտէրեան։*

*Ը.— Սէն Լու եւ Սէն Մարկրիթէն հաւաքուած է 573 ֆր. 15 սանթիմ, հաւաքիչներն են. — Ա. Զաքարեան, Կ. Մաղմանեան, Ս. Չիլյովհաննէսեան եւ Հաճի աղան։*

*Թ.— Սէն Ժէրոմ եւ Նօթր. տամ Քոնսէլասիոնէն հաւաքուած է 264 ֆր. 35 սանթիմ, հաւաքիչներն են.— Հ. Երեցեան, Ս. Արապշեան, Ս. Ժամկոչեան։*

*Մարսէյլ եւ արուարձաններէն գոյացած է 6847 ֆր. 20 սանթիմ.*

*Փարիզէն միեւնոյն նպատակաւ մեզ ուղարկուած են հետեւեալ գումարները.— Յ. Սարգիսեան 1003 ֆր., Գ. Սաղրեան 140 ֆր., Գ. Կարապետեան 174 ֆր. 25 սանթիմ։*

*Լա Սիօթայէն Սեբաստիոյ Ալաքիլիսէ գիւղաքաղաքի հայրենակցական միութիւնը 300 ֆր. ուղարկած է։*

*Ընդհ. մուտք 8464 ֆր. 45։*

*Մեր շնորհակալութիւնները կը յայտնենք այս բարեսիրական նպատակին մասնակցողներուն եւ բոլոր հանգանակիչ յանձնախումբերուն, նոյնպէս մասնաւոր շնորհակալութիւններ Պ. Պ. Յ. Սարգիսեանի, Գ. Սաղրեանի եւ Գ. Կարապետեանի ու իրենց հանգանակութեան մասնակցողներուն, նաեւ Սեբաստիոյ Ալաքիլիսէ գիւղաքաղաքի Հայր. միութեան ու վանեցի հայրենակիցներուն որոնք անձամբ 170 ֆր. նուիրած են յիշեալ ընտանիքներուն։*

*Կը հրաւիրենք Սեբաստիոյ գաւառացիներուն հանգանակիչ յանձնախումբեր կազմել իրենց գտնուած վայրերուն մէջ: Վարչութեանս հասցէն՝* Avedis Vahradian, Camp. Vigtor Hugo, Marseille, (B. du R.) France.

*Հանգանակիչ յանձնախումբերուն վարչութեան ատենապետ* Ա. Վահրամեան, *ատենադպիր* Արգար Թէրզեան։


















IMPRIMERIE - MASSIS - É[...]

208bis, Rue Lafayette Pa[ris]

Le Gérant H. STEP[...]